# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**6**

ՀՈՒՆԻՍ, 1980

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

**ИЗДАЕТСЯ С 1922 Г.**

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«ЛЕНИНЯН УГИОВ»** («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՎԱՐՇԱՎԱՅԻ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ ՄԱՍՆԱԿԻՑ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՈՆՍՈՒԼՏԱՏԻՎ ԿՈՄԻՏԵԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

## ՎԱՐՇԱՎԱՅԻ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ ՄԱՍՆԱԿԻՑ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ

## ԴԵԿԼԱՐԱՑԻԱՆ

*1980 թ. մայիսի 14—15-ը Վարշավայում բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունում ներկայացված Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետությունը, Հունգարական Ժողովրդական Հանրապետությունը, Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը, Լեհական Ժողովրդական Հանրապետությունը, Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետությունը, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, Չեխոսլովակիայի Սոցիալիստական Հանրապետությունը ամփոփեցին խաղաղությանը ծառայող իրենց պաշտպանողական դաշինքի 25-ամյա գործունեության արդյունքները և քննության առան Եվրոպայում լարվածության թուլացման և անվտանգության, ընդհանուր խաղաղության ամրապնդման պայքարի հրատապ խնդիրները:*

### I.

*Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության մասնակիցները գոհունակության զգացումով նշեցին 25 տարի առաջ Վարշավայում բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության պայմանագրի ստորագրման կարևոր նշանակությունը՝ ի պատասխան ՆԱՏՕ-ի բլոկի կազմավորման, Եվրոպայում պատերազմի վտանգի ուժեղացման և խաղաղասեր պետությունների ազգային անվտանգությանն սպառնացող վտանգի, հատկապես Արևմտյան Գերմանիայի վերառազմականացման՝ այդ ռազմական բլոկի ղեկավար շրջանների կուրսի կապակցությամբ:*

*Այդ ամբողջ քառորդ դարի ընթացքում մեր եղբայրական դաշինքը, նրա մեջ մտնող պետությունները, փոխգործակցելով և համագործակցելով ուրիշ պետությունների հետ, բոլոր խաղաղասեր ուժերի հետ, վստահորեն և արդյունավետ կերպով լուծում են կենսականորեն կարևոր խնդիրները՝ թույլ չտալ պատերազմի սանձազերծում Եվրոպայում, ըստ ամենայնի նպաստել խաղաղության ամրապնդմանը, միջազգային լարվածության թուլացմանը, պետությունների միջև իրավահավասար խաղաղ համագործակցության զարգացմանը:*

*Խորհրդակցության մասնակիցները բարձր են գնահատում իրենց պետությունների միջև եղբայրական բարեկամությունն ամրապնդելու գործում, մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների, իրավահավասարության, անկախության և ազգային սուվերենության հարգման, ներքին գործերին չմիջամտելու, ընկերական փոխօգնության և ինտերնացիոնալ համերաշխության վրա հիմնված լայն ու բազմակողմանի փոխադարձ համագործակցությունը զարգացնելու ասպարեզում ձեռք բերված արդյունքները:*

*Խաղաղության, անվտանգության համար և լարվածության թուլացման հա-*

-կրճատումից: Այս առաջարկությունները ներկայումս էլ ուժի մեջ են մնում:
Ո՛չ թե երկու դաշինքների ընդլայնում, ո՛չ թե նոր շրջանների վրա դրանց
գործունեության տարածում, այլ Եվրոպան ռազմաքաղաքական խմբավորում-
ների բաժանելու հաղթահարում, նրանց միջև դիմակայության թուլացում, եվ-
րոպական բոլոր պետությունների հարաբերություններում վստահության ամ-
րապնդում՝ այսպիսին է Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների
քաղաքականությունը նրա կնքման առաջին օրերից մինչև հիմա: Դա երկու դա-
շինքների մասնակիցներին թույլ կտար թեթևացնել ռազմական ծախսերի բեռը,
ամբողջովին կենտրոնանալ զարգացման և խաղաղ համագործակցության խըն-
դիրների վրա:

Վարշավայի պայմանագրի մասնակից երկրները այդ են ուզում, նրանք
պատրաստ են դրան, նրանք բազմիցս առաջ են քաշել այդ նպատակին ուղղված
նախաձեռնություններ: Բոլոր ժողովուրդների շահերը պահանջում են, որ ՆԱՏՕ-ի
անդամ երկրները նույնպես կոնստրուկտիվ դիրք գրավեն:

Քառորդ դար առաջ, երբ ֆաշիստական ագրեսորների ջախջախման և երկ-
րորդ համաշխարհային պատերազմի ավարտումից ի վեր անցել էր դեռ միայն
մեկ տասնամյակ, քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունում
ներկայացված պետությունները, ոգեշնչված պատերազմներից զերծ աշխարհ
կառուցելու գաղափարով, պարտավորություն ստանձնեցին աշխատել եղբայ-
րական դաշինքով, որպեսզի առավելագույն չափով մեծացնեն իրենց ավանդը
այդ մեծ խնդրի լուծման գործում:

Այժմ, երբ երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից ի վեր անցել
է արդեն 35 տարի, նրանք ավելի, քան երբևիցե, համոզված են, որ այդպիսի
աշխարհի կառուցումը դժվարին, բայց ռեալ խնդիր է: Այդ նպատակը այսուհետ
ևս առաջին տեղում կմնա նրանց քաղաքականության մեջ:

Նրանք գիտակցում են, որ կարևոր շատ հարցեր, որոնցից կախված են
մարդկության խաղաղ ապագան և առաջադիմությունը, դեռևս լուծված չեն,
հատկապես սպառազինությունների մրցավազքի դադարեցման բնագավառում,
որը շարունակում է ուժեղանալ՝ ավելի ու ավելի մեծ չափով սպառնալով լար-
վածության թուլացման պրոցեսին, ժողովուրդների խաղաղությանն ու անվտան-
գությանը: Վերջին ժամանակներս այդ պրոբլեմներն է՛լ ավելի են սրվել: Բայց
կայուն խաղաղություն կառուցելու սկիզբը դրված է: Այն պետք է շարունակվի:

Այդ նպատակով բոլոր մյուս խաղաղասեր երկրների և հասարակական
ուժերի հետ համատեղ անդուլ կերպով գործելու իրենց անհողդողդ վճռակա-
նությունը քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությանը ներկա-
յացված պետությունները հանդիսավոր կերպով հավաստում են բարեկամու-
թյան, համագործակցության և փոխադարձ օգնության իրենց պայմանագրի
ստորագրման XXV տարեդարձի օրը:

## II.

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության մասնակիցնե-
րը, միջազգային դրության զարգացման ընդհանուր վիճակից ելնելով, քննու-
թյան առան Եվրոպայում ներկայումս ստեղծվող իրադրությունը, եվրոպական
մայրցամաքում անվտանգության և համագործակցության հրատապ հարցերը:

Նրանք շեշտեցին, որ համաշխարհային իրադարձությունների ընթացքը
հաստատեց Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների Մոսկվայի
1978 թ. նոյեմբերի 23-ի դեկլարացիայում ձևակերպված գնահատականների և
նպատակների ճշտությունը:

Այդ կապակցությամբ խորհրդակցության մասնակիցները նշեցին, որ, մի
կողմից, շարունակվում է ամրապնդվել իմպերիալիզմի, գաղութատիրության և
նեոգաղութատիրության ագրեսիվ ու կեղեքիչ քաղաքականությանը վերջ տա-
լու՝ ժողովուրդների, բոլոր առաջադեմ և խաղաղասեր ուժերի վճռականությու-
նը, է՛լ ավելի է ծավալվում պայքարը խաղաղության, լարվածության թուլաց-
ման համար, սպառազինությունների մրցավազքի դադարեցման, ազատության
և սոցիալական առաջադիմության համար, իրավահավասար խաղաղ միջազ-
գային համագործակցության համար՝ ազգային անկախության և սուվերենու-
թյան փոխադարձ հարգման, ներքին գործերին չմիջամտելու հիման վրա:

Մյուս կողմից՝ խորհրդակցության մասնակիցները հիշեցրին, որ Մոսկվայի



դեկլարացիայում նրանք նշել էին իմպերիալիզմի և ռեակցիայի ուժերի ակտի-
վության նոր աճը, նրանց ուժեղացող փորձերը՝ իրենց տիրապետությանը են-
թարկելու անկախ պետություններին ու ժողովուրդներին, սպառազինություն-
ների մրցավազքի արագացումը, նրանց կոպիտ միջամտությունը ուրիշ պետու-
թյունների ներքին գործերին, որն արդեն այն ժամանակ սպառնալիք էր ստեղ-
ծում լարվածության թուլացման պրոցեսի համար, հակասում էր ժողովուրդ-
ների խաղաղության, ազատության, անկախության և առաջադիմության ձգտ-
մանը:

Ուստի նրանք է՛լ ավելի մեծ մտահոգությամբ են նշում, որ այժմ միջազ-
գային դրությունը ավելի է բարդացել, խաղաղության և լարվածության թու-
լացման գործին սպառնացող վտանգը զգալիորեն մեծացել է: Դա ուժի, առ-
ճակատման և հեգեմոնիզմի, իմպերիալիստական քաղաքականության հետագա
ակտիվացման, միջազգային չլուծված հարցերի կուտակման հետևանքն է: Այդ
քաղաքականությունը վարող իմպերիալիստական շրջանները բացեիբաց խախ-
տում են պետությունների անկախությունն ու սուվերենությունը, միջամտում են
նրանց ներքին գործերին, միջազգային հարաբերություններում ավելի ու ավելի
հաճախ են ուժ կիրառում և սպառնում դրա կիրառմամբ:

Դրա հետ մեկտեղ նորանոր խոչընդոտներ են ստեղծվում միջազգային
տնտեսական հարաբերությունները իրավահավասար և արդարացի հիմքով վե-
րակառուցելու ճանապարհին: Էներգետիկ և հումքային ռեսուրսների համար
մղվող պայքարում ավելի ու ավելի հաճախ է ուժ կամ ուժի սպառնալիք կիրառ-
վում: Դա անկայունություն է հարուցում միջազգային հարաբերություններում,
տանում է դեպի լարվածության նոր օջախների դոյացում:

Իմպերիալիստական և ռեակցիոն ուժերը այս ամենն օգտագործում են
ռազմական բյուջեները մեծացնելու, սպառազինության երկարաժամկետ ծրա-
գրերն արագացնելու համար: Դրա հետևանքով նոր խոչընդոտներ են առաջա-
նում Եվրոպայի անվտանգության ամրապնդման ճանապարհին, որտեղ նախ-
կինի պես առաջընթաց չկա ռազմական լարվածության թուլացման և զինա-
թափման գործում, շարունակվում է ռազմական ծախսերի, զորքերի և սպառա-
զինությունների մեծացումը, հարաճուն մասշտաբներով կուտակվում են ոչըն-
չացման միջոցներ, հատկապես միջուկային միջոցներ, որոնք սպառնում են
մայրցամաքի ժողովուրդներին:

Առանձնահատուկ վտանգ է ներկայացնում ՆԱՏՕ-ի որոշումը միջին հե-
ռավորության ամերիկյան նոր հրթիռամիջուկային միջոցներ արտադրելու և
Արևմտյան Եվրոպայում տեղաբաշխելու մասին: Եթե դա իրականացվի, Եվրո-
պայի մայրցամաքում իրադրությունը խիստ կվատթարանա, քանի որ Եվրո-
պայում կործանարար պոտենցիալի մեծացումը անխուսափելիորեն կշոշափի
մայրցամաքի քաղաքական կլիման և կվնասի ժողովուրդների կենսական շա-
հերին, կպատճառի նոր վիթխարի ծախսեր, որոնք ավելի ծանր բեռ կլինեն
ժողովուրդների ուսերին:

Հետաձգելով ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման
սովետա-ամերիկյան պայմանագրի (ՍՍՍ—2) վավերացումը, իրենց մի քանի
դաշնակիցների հետ լճացման հանգեցնելով սպառազինությունների մրցավազ-
քի սահմանափակման բազմաթիվ կարևոր կողմերին վերաբերող բանակցու-
թյունները, իսկ մի քանի ուղղություններով առհասարակ ընդհատելով դրանք,
Ամերիկայի Միացյալ Նահանգները գործում են հակառակ միջազգային վստա-
հության և լարվածության թուլացման շահերի, ի հակակշիռ զինաթափման
հարցերին նվիրված ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի հատուկ նստաշրջանի որո-
շումների: Բազմապատկվում են այն փաստերը, երբ ԱՄՆ-ը ի չիք է դարձնում
իր կնքած քաղաքական և առևտրատնտեսական պայմանագրերն ու համաձայ-
նագրերը, ցուցադրաբար հրաժարվում է իր պարտավորություններից, դրանով
իսկ խախտելով միջազգային իրավունքի վրա հիմնված պարտավորությունների
բարեխիղճ կատարման սկզբունքը, որը հռչակվել է ՄԱԿ-ի կանոնադրությամբ
և համաեվրոպական խորհրդակցության եզրափակիչ ակտով:

Սոցիալիստական պետությունների դեմ քաղաքական և պրոպագանդիստա-
կան կամպանիաներ են ծավալվում «սառը պատերազմի» ոգով: ԱՄՆ-ի կառա-
վարությունը աննախադեպ ճնշում է գործադրում օլիմպիական շարժման վրա,
որի մեջ, վաղնջական ժամանակներից մինչև մեր օրերը, մարմնավորվում է

խաղաղության, ժողովուրդների համագործակցության ու մերձեցման ոգին։

Խորհրդակցությանը ներկայացված պետությունները իրենց ձայնն են բարձրացնում ընդդեմ բոլոր նման քայլերի ու գործողությունների, ընդդեմ միջազգային լարվածության թուլացումը խախտելու, պետությունների համագործակցության զարգացմանը խոչընդոտելու փորձերի։ Նրանք վճռականապես հանդես են գալիս հօգուտ այն բանի, որ չձեռնարկվեն այնպիսի քայլեր, որոնք ընդունակ լինեն բարդացնելու իրադրությունը, որպեսզի բոլոր պետությունները միավորեն ջանքերը՝ նպատակ ունենալով կանգնեցնել լարվածության աճը, շարունակել լարվածության թուլացման և խաղաղ համագործակցության քաղաքականությունը։

Խորհրդակցության մասնակիցները հաստատակամորեն հանդես են գալիս այն բանի օգտին, որ թույլ չտրվի եվրոպական մայրցամաքում թշնամանքի և անվստահության իրադրության վերածնում։ Եվրոպական ժողովուրդների համար, որոնք սեփական փորձով համոզվել են, թե լարվածության թուլացումը որքան խորն է համապատասխանում իրենց իսկական շահերին, լարվածության թուլացման պրոցեսի շարունակումը, իրավահավասար համագործակցության զարգացումը, ինչպես որ աշխարհի բոլոր ժողովուրդների համար, կենսականորեն կարևոր գործ են հանդիսանում։

Անհրաժեշտ է, որ Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցության մասնակից պետությունների ներկայիս քաղաքական, տնտեսական, գիտատեխնիկական և մյուս խաղաղ կապերը ոչ թե կրճատվեն, այլ է՛լ ավելի զարգանան, որ նրանց քաղաքական կոնտակտների և կոնսուլտացիաների շրջանակներում շարունակվի եվրոպական ու համաշխարհային հրատապ պրոբլեմների շուրջ կարծիքների, գաղափարների, նկատառումների փոխանակումը։

Կարևոր է նաև օգտագործել Հելսինկիի եզրափակիչ ակտում բովանդակվող որոշումների հիման վրա 1978—80 թվականներին տեղի ունեցած համաեվրոպական հանդիպումների փորձը։ Հարկավոր է ապահովել համաեվրոպական խորհրդակցության՝ շրջակա միջավայրի պաշտպանությանը վերաբերող արդյունքների կենսագործումը, անցկացնել էներգետիկային նվիրված համաեվրոպական խորհրդակցություն, որի նախապատրաստությունը արդեն սկսվել է, պայմանավորվել տրանսպորտին նվիրված նույնանման խորհրդակցության անցկացման շուրջը։

Դրա հետ մեկտեղ քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության մասնակիցները իրենց պարտքն են համարում շեշտել, որ եվրոպական մայրցամաքում լարվածության թուլացման պրոցեսի շարունակումը և խորացումը վճռականորեն կախված են այն բանից, թե համաեվրոպական խորհրդակցության մասնակից բոլոր պետությունները որչափ խնամքով կվերաբերվեն վերջին տասնամյակում Եվրոպայում կուտակված դրական ակտիվին, թե որչափ հետևողականորեն պրակտիկայում կիրագործվեն Հելսինկիի եզրափակիչ ակտի բոլոր սկզբունքները և դրույթները։

Այդ կապակցությամբ նրանք հատկապես ուշադրություն են հրավիրում պետությունների սուվերենությունն ու նրանց սահմանների անխախտելիությունը կասկածի ենթարկելու վերսկսված փորձերի վրա, որ հակասում է եզրափակիչ ակտով համաեվրոպական խորհրդակցության մասնակից բոլոր պետությունների ստանձնած պարտավորություններին։

Խորհրդակցությունում ներկայացված պետությունները լի են վճռականությամբ բոլոր խաղաղասեր երկրների և հասարակական ուժերի հետ համատեղ պաշտպանել միջազգային լարվածության թուլացումը, ջանքեր գործադրել այն անընդհատ ու բազմակողմանի, իր ընդգրկմամբ համընդհանուր պրոցես դարձնելու համար։ Նրանք առաջվա պես պատրաստ են զարգացնել և խորացնել հարաբերությունները Եվրոպայի ու աշխարհի բոլոր երկրների հետ, ընդլայնելով համագործակցության արդեն փորձված ուղիները և հարթելով նոր ուղիներ։

Խորհրդակցության մասնակիցների համոզմամբ, Եվրոպայում լարվածության թուլացման պրոցեսի խորացման, անվտանգության ամրապնդման և համագործակցության զարգացման ասպարեզում կարող է և պետք է կարևոր դեր խաղա համաեվրոպական խորհրդակցության մասնակից պետությունների ներկայացուցիչների Մադրիդում կայանալիք հանդիպումը։ Նրանք գտնում են,



որ Եվրոպայի ներկա դրությունը հրամայաբար պահանջում է, որ այդ հանդիպման խնամքով նախապատրաստմանը պատշաճ ուշադրություն նվիրեն նրա բոլոր մասնակիցները և որ նրանք ձգտեն ստեղծել հանդիպման հաջողության համար անհրաժեշտ վստահության ու փոխըմբռնման մթնոլորտ։ Մեծ է Մադրիդի հանդիպման բոլոր մասնակիցների պատասխանատվությունը այն բանի համար, որ ապահովվի դրա անցկացումը կոնստրուկտիվ մթնոլորտում։

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության մասնակիցները գտնում են, որ հնարավորություններ կան Մադրիդի հանդիպումն ավարտելու Եվրոպայի անվտանգության ռազմական ու քաղաքական կողմերի, բոլոր բնագավառներում համագործակցության զարգացման վերաբերյալ գործնական քայլերի համաձայնեցումով։ Դրա համար հարկավոր է հանդիպման բոլոր մասնակիցների կամքը, հարկավոր են նրանց ջանքերը՝ եզրափակիչ ակտի յուրաքանչյուր հատվածի գծով կոնստրուկտիվ քայլերի համաձայնեցման հնարավորություններ փնտրելու և գտնելու նրանց պատրաստակամությունը։

Այն պրոբլեմների մեջ, որոնցից կախված է Եվրոպայում խաղաղության ամրապնդումը, կենտրոնական տեղը այժմ պատկանում է մայրցամաքում ռազմական լարվածության թուլացման և զինաթափման պրոբլեմին։

Եվրոպայում ռազմական լարվածության թուլացման գործում առաջադիմության հասնելը օբյեկտիվ և ամենասուր պահանջմունքն է։ Այս իմաստով առաջնահերթ նշանակություն ունեն վստահության միջոցների ամրապնդումը և ընդլայնումը, ուժի գործադրումից կամ ուժով սպառնալուց հրաժարվելը, յուրաքանչյուր պետության կամ պետությունների խմբի զինված ուժերի և սպառազինությունների սահմանափակումը բացառապես պաշտպանության պահանջմունքներով, ռազմական գերազանցության հասնելու փորձերից փոխադարձ հրաժարումը։

Խորհրդակցության մասնակիցները գտնում են, որ չկան և չեն կարող լինել անհաղթահարելի խոչընդոտներ Եվրոպայում ռազմական լարվածության թուլացման օգտին գործնական լուծումներ գտնելու համար, եթե բոլոր կողմերը այդ խնդրին մոտենան իրենց կոնստրուկտիվ ավանդը ներդնելու ցանկությամբ։

Այդպիսի մոտեցման օրինակ է Կենտրոնական Եվրոպայից որոշակի քանակությամբ իր զորքերն ու սպառազինությունները, այդ թվում՝ տանկային զորամասերը միակողմանի կարգով դուրս բերելու Սովետական Միության որոշումը։ Վարշավայի պայմանագրի մասնակից բոլոր պետությունները, ՍՍՀՄ-ի այդ խաղաղասիրական քայլի նկատմամբ դրական վերաբերմունք արտահայտելով դրա հայտարարման պահին, ներկայումս շարունակում են լիովին պաշտպանել այդ քայլի իրականացումը։

Համաեվրոպական խորհրդակցության մասնակից բոլոր պետությունների կառավարությունների առջև արդեն մեկ տարի է, ինչ դրված է Եվրոպայի ռազմական լարվածության թուլացման և զինաթափման կոնֆերանս հրավիրելու առաջարկությունը, որը առաջ են քաշել Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները և որը կոնկրետացված է նրանց համատեղ փաստաթղթերում։ Այդ կոնֆերանսի անցկացումը կարող է կարևոր ուղենիշ դառնալ Եվրոպայի խաղաղության հիմքերի ամրապնդման, Եվրոպայում ռազմական դիմակայությունը նվազեցնելու և զինաթափման հասնելու արդյունավետ միջոցների իրականացման վերաբերյալ համաեվրոպական խորհրդակցության մասնակից բոլոր պետությունների պարտավորությունների կենսագործման ասպարեզում։

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունում ներկայացված պետությունները համաեվրոպական խորհրդակցության բոլոր մասնակիցներին կոչ են անում կոնստրուկտիվ դիրք բռնել Եվրոպայում ռազմական լարվածության թուլացման ու զինաթափման կոնֆերանսի հարցում, որպեսզի Մադրիդի հանդիպման ժամանակ կարելի լինի որոշում ընդունել այդ կոնֆերանսի հրավիրման մասին։ Նրանք պատրաստ են իրենց կողմից ուշադրությամբ ուսումնասիրել կոնֆերանսի աշխատանքի կարգի և բովանդակության վերաբերյալ մյուս պետությունների առաջարկությունները։

Խորհրդակցության բոլոր մասնակիցները պաշտպանում են Լեհական Ժողովրդական Հանրապետության այն առաջարկությունը, որ Եվրոպայում ռազմական լարվածության թուլացման և զինաթափման կոնֆերանսը անցկացվի

վել է Միավորված ազգերի կազմակերպությունը, բայց որոնց շուրջը մինչև օրս բանակցություններ չեն վարվում.

— ուժ չգործադրելու վերաբերյալ համաշխարհային պայմանագիր կնքելու շուրջը.

— միջուկային զենքի արտադրությունը դադարեցնելու և նրա պաշարները աստիճանաբար կրճատելու շուրջը, ընդհուպ մինչև դրանց խսպառ վերացումը.

— մասսայական ոչնչացման զենքի նոր տեսակների ու նոր սիստեմների ստեղծումն արգելելու շուրջը.

— պետությունների, առաջին հերթին խոշոր տերությունների, ռազմական բյուջեների կրճատման շուրջը:

Ոչ մի պետություն, ոչ մի կառավարություն համոզիչ պատճառներ չունի և չի կարող ունենալ այդ պրոբլեմների շուրջը վարվելիք բանակցություններից խույս տալու համար: Մարդկության խիղճը չի կարող հաշտվել այն բանի հետ, որ ձեռքից բաց թողնվի այդ պրոբլեմները հօգուտ բոլոր մարդկանց լուծելու հնարավորությունը:

Նաև անհրաժեշտ է առանց հետագա ձգձգումների միջազգային մասշտաբով նոր քայլեր ձեռնարկել այն նպատակով,

որպեսզի առհավետ արգելվի միջուկային զենքի գործադրումը, և բոլոր պետությունները հրաժարվեն միմյանց հետ ունեցած հարաբերություններում ուժի գործադրումից, վերացվեն օտարերկրյա ռազմական բազաները և ուրիշի տերիտորիաներից դուրս բերվեն օտարերկրյա զորքերը, կրճատվեն զինված ուժերն ու սպառազինությունները, միջուկազերծ գոտիներ և խաղաղության գոտիներ ստեղծվեն աշխարհի զանազան շրջաններում, այդ թվում՝ Եվրոպայում:

Յոթերորդ: Ելնելով խաղաղության և միջազգային իրադրության կայունացման շահերից, ինչպես նաև միջազգային կարևորագույն ծովային կոմունիկացիաների հուսալի և անարգել օգտագործումն ապահովելու շահերից, ասենք՝ ՄԱԿ-ի շրջանակներում, ձեռնամուխ լինել համապատասխան շրջաններում, լինեն դրանք Ատլանտյան, Հնդկական թե Խաղաղ օվկիանոսները, Միջերկրական ծովը թե Պարսից ծոցը, ռազմական ներկայության և ռազմական գործունեության մակարդակների սահմանափակման ու իջեցման հարցի քննարկմանը:

Հանդես գալով այդ առաջարկություններով, Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները հույս են հայտնում, որ դրանք դրական ոգով կընկալվեն և ուշի-ուշով կուսումնասիրվեն Եվրոպայի և աշխարհի բոլոր պետությունների կառավարությունների կողմից, լայն պաշտպանության կարժանանան ինչպես նրանց, այնպես էլ եվրոպական ու համաշխարհային հասարակայնության կողմից: Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները պատրաստ են բոլոր շահագրգռված պետությունների հետ կոնտակտներ և երկխոսություններ ունենալ այդ առաջարկությունների էության շուրջը: Ինչպես և միշտ, նրանք պատրաստ են ուշի-ուշով և կոնստրուկտիվ ոգով քննարկելու խաղաղության ամրապնդման և լարվածության թուլացման, սպառազինությունների մրցավազքի սանձահարման, զինաթափման, միջազգային համագործակցության զարգացման վերաբերյալ նաև մյուս պետությունների առաջարկությունները:

⁂

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունում քննարկելով Եվրոպայում լարվածության թուլացման ու անվտանգության համար, նոր խաղաղության ամրապնդման համար մղվող պայքարի հրատապ խնդիրները, Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները հավատում են իրենց անսասան նվիրվածությունը խաղաղության քաղաքականությանը, եվրոպական և միջազգային անվտանգությանը:

Նրանք լի են վճռականությամբ՝ բոլոր բնագավառներում ամրապնդելու իրենց, ինչպես նաև մյուս սոցիալիստական երկրների եղբայրական բարեկամությունն ու համագործակցությունը, զարգացնելու հարաբերությունները, շարունակելու և խորացնելու երկխոսությունը բոլոր պետությունների հետ:



Բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության Վարշավայի պայմանագրի ստորագրումից հետո անցած քառորդ դարը ագրեսիայի ու հեգեմոնիզմի իմպերիալիստական քաղաքականության դեմ, խաղաղության ու լարվածության թուլացման համար պետությունների միջև հավասարության ու խաղաղ համագործակցության հարաբերությունների հաստատման համար մղված պայքարի տարիներ են:

Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները հաստատ վստահություն են հայտնում, որ գործելով բարձր պատասխանատվության ոգով, աշխարհի պետություններն ու ժողովուրդները ընդունակ են ապահովելու խաղաղության պահպանումն ու ամրապնդումը, մարդկության ազատության ու առաջադիմության ձգտումների իրականացումը:

Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետության կողմից՝

ՏՈԴՈՐ ԺԻՎԿՈՎ

*Բուլղարական կոմունիստական կուսակցության Կենտկոմի*
*առաջին քարտուղար, Բուլղարիայի Ժողովրդական*
*Հանրապետության Պետական խորհրդի նախագահ*

Հունգարական Ժողովրդական Հանրապետության կողմից՝
ՅԱՆՈՇ ԿԱԴԱՐ

*Հունգարական սոցիալիստական բանվորական կուսակցության*
*Կենտկոմի առաջին քարտուղար*

Գերմանական Դեմոկրատական Հանրապետության կողմից՝
ԷՐԻԽ ՀՈՆԵԿԵՐ

*Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցության*
*Կենտկոմի գլխավոր քարտուղար, Գերմանական Դեմոկրատական*
*Հանրապետության Պետական խորհրդի նախագահ*

Լեհական Ժողովրդական Հանրապետության կողմից՝
ԷԴՎԱՐԴ ԳԵՐԵԿ

*Լեհական միացյալ բանվորական կուսակցության Կենտկոմի*
*առաջին քարտուղար*

Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության կողմից՝
ՆԻԿՈԼԱԵ ՉԱՈՒՇԵՍԿՈՒ

*Ռումինական կոմունիստական կուսակցության գլխավոր*
*քարտուղար, Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության*
*պրեզիդենտ*

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կողմից
Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ

*Սովետական Միության կոմունիստական կուսակցության*
*Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի*
*նախագահության նախագահ*

Չեխոսլովակիայի Սոցիալիստական Հանրապետության կողմից՝
ԳՈՒՍՏԱՎ ՀՈՒՍԱԿ

*Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության Կենտկոմի*
*գլխավոր քարտուղար, Չեխոսլովակիայի Սոցիալիստական*
*Հանրապետության պրեզիդենտ*

Քաղ. Վարշավա, 15 մայիսի 1980 թվականի

# ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ

Ոգեշնչվելով երկրագնդի բոլոր ժողովուրդների խաղաղ ապագայի հույսերն ամրապնդելու ձգտումով, Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության մասնակիցները հանդես են գալիս հետևյալ նախաձեռնությամբ:

Նրանք առաջարկում են, որ ամենամոտ ժամանակներս հանդիպում անցկացվի աշխարհի բոլոր շրջանների պետությունների ղեկավարների ամենաբարձր մակարդակով: Հանդիպման մասնակիցների ուշադրության կենտրոնում պետք է դրվի ինչպես եվրոպական ժողովուրդներին, այնպես էլ համայն մարդկությանը հուզող խնդիրը՝ միջազգային լարվածության օջախները վերացնելու և պատերազմ թույլ չտալու խնդիրը: Ընդսմին, պետք է առանձնահատուկ ուշադրություն դարձվի Եվրոպայի անվտանգության, եվրոպական մայրցամաքի խաղաղության պահպանման հարցերին:

Այդպիսի հանդիպման մասին կարելի է պայմանավորվել պետությունների միջև կոնսուլտացիաների ուղիով:

Այսօրվա իրադրությունը, այն երկյուղները, որ առաջացնում է այդ իրադրությունը, և այն հնարավորությունները, որոնք բնավ էլ չեն սպառված, վերջապես, հակահիտլերյան կոալիցիայի ժամանակներից մինչև մեր օրերն ընկած պատմության ամբողջ փորձը ասում են, որ հենց բարձր մակարդակի այդպիսի հանդիպումն է փոխըմբռնման ու կայուն խաղաղության հասնելու առավել հուսալի ուղին:

Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետության կողմից՝

ՏՈԴՈՐ ԺԻՎԿՈՎ

*Բուլղարական կոմունիստական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար, Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետության Պետական խորհրդի նախագահ*

Հունգարական Ժողովրդական Հանրապետության կողմից՝

ՅԱՆՈՇ ԿԱԴԱՐ

*Հունգարական սոցիալիստական բանվորական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար*

Գերմանական Դեմոկրատական Հանրապետության կողմից՝

ԷՐԻԽ ՀՈՆԵԿԵՐ

*Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության Պետական խորհրդի նախագահ*

Լեհական Ժողովրդական Հանրապետության կողմից՝



ԷԴՎԱՐԴ ԳԵՐԵԿ

*Լեհական միացյալ բանվորական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար*

Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության կողմից՝

ՆԻԿՈԼԱԵ ՉԱՈՒՇԵՍԿՈՒ

*Ռումինական կոմունիստական կուսակցության գլխավոր քարտուղար, Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության պրեզիդենտ*

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կողմից՝

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ

*Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ*

Չեխոսլովակիայի Սոցիալիստական Հանրապետության կողմից՝

ԳՈՒՍՏԱՎ ՀՈՒՍԱԿ

*Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար, Չեխոսլովակիայի Սոցիալիստական Հանրապետության պրեզիդենտ*

Քաղ. Վարշավա, 15 մայիսի 1980 թվականի

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԵԼՈՒՅԹԸ

Թանկագին ընկեր Գե՛րեկ:

Թանկագին ընկերնե՛ր և բարեկամնե՛ր:

Այստեղ, մայիսյան Վարշավայում, մենք նշում ենք մեր պայմանագրի 25-ամյակը, մեր կազմակերպության քառորդ դարը:

Մտովի մի հայացք գցելով այդ անցած 25 տարիների վրա, մենք մաքուր խղճով կարող ենք ասել՝ պատմությունը հաստատեց մեր պետությունների կողմից 1955 թվականի մայիսի 14-ին Լեհաստանի մայրաքաղաքում կատար-ված ակտի արդարացվածությունն ու հեռատեսությունը: Վարշավայի պայ-մանագրի կազմակերպությունը կարող է հպարտանալ իր գործունեության արդյունքներով:

Մեր դաշինքին միշտ խորթ են եղել ագրեսիվ նկրտումները: Այն երբեք ուղղված չի եղել որևէ երկրի և երկրների խմբի շահերի դեմ: Այն ստեղծվեց նոր կյանքի կառուցմամբ զբաղված մեր ժողովուրդների խաղաղ աշխատան-քը պաշտպանելու համար: Այն ստեղծվեց կայուն խաղաղության գործի, պե-տությունների սուվերեն իրավունքների և ժողովուրդների ազատության հարգ-ման օգտին մեր համատեղ պայքարի համար: Եվ այն միշտ լավ է կատարել ու շարունակում է կատարել իր պատմական առաքելությունը:

Վարշավայի պայմանագրի մասնակիցները ստեղծեցին հուսալի համա-տեղ պաշտպանություն, և դրանով ի չիք դարձրեցին սոցիալիզմի՝ ագրեսիվո-րեն տրամադրված թշնամիների նկրտումը՝ փորձել ուժով վերաձևել Եվրոպա-յի՝ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ստեղծված հասարակա-կան-քաղաքական քարտեզը: Դրանով իսկ հիմքեր դրվեցին Արևմուտքի պե-տական գործիչների կողմից առավել ռեալիստական մոտեցման համար, հիմ-քեր խաղաղ գոյակցության և լարվածության թուլացման համար:

Կարելի է առանց չափազանցության ասել, որ Վարշավայի պայմանագրի կազմակերպությունը մշտապես եղել է խոշորագույն խաղաղ նախաձեռնու-թյունների աղբյուրը: Դրանց իրականացումը թույլ տվեց դնել արդի Եվրո-պայի խաղաղ կյանքի ամուր հիմքը, նախատեսել մեր մայրցամաքի ժողո-վուրդների անվտանգության հետագա ամրապնդման կոնկրետ ուղիները:

Այսօր բոլոր ազնիվ մարդիկ խոստովանում են՝ Վարշավայի պայմանա-գրի կազմակերպությունը, նրա հետևողական, սկզբունքային խաղաղասիրա-կան քաղաքականությունը Եվրոպայի կայուն խաղաղության և անվտանգու-թյան հիմնական պատվարն է, ընդհանուր խաղաղության գլխավոր պատվար-ներից մեկը:

Մեր քաղաքականության ուժը մեր երկրների, մեր կուսակցությունների, մեր ժողովուրդների եղբայրական միասնությունն է, մարքսիզմ-լենինիզմի մեծ գաղափարներին, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին մեր հավատարմությունը: Մեր քաղաքականության ուժն այն է, որ նա համապա-տասխանում է ամբողջ աշխարհի հարյուր միլիոնավոր մարդկանց կենսական



շահերին, բոլոր նրանց շահերին, ում հարկավոր է խաղաղություն և ոչ թե պա-տերազմ, ում համար թանկ է ստեղծարար աշխատանքը և ոչ թե կործանումը, ով ուզում է ժողովուրդների համագործակցություն ու փոխըմբռնում և ոչ թե խորթացում և թշնամանք:

Այս ոգով էլ մենք ձեզ հետ աշխատեցինք նաև մեր հոբելյանական նիս-տում և, թվում է, վատ չաշխատեցինք:

Այսօր քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի ընդունած փաստաթղթերը, անտարակույս, նկատելի հետք կթողնեն միջազգային կյանքում: Այժմյան բարդ իրադրության մեջ, երբ միլիոնավոր մարդիկ տագնապ են ապրում լար-վածության թուլացման և խաղաղության բախտի համար, Վարշավայից հստակ նախազգուշացում է հնչում ընդդեմ պատերազմական արկածախնդրություն-ների և սպառազինությունների տենդագին մրցավազքի քաղաքականության, հնչում է բանականության և խաղաղության ձայնը, արդիականության սուր պրոբլեմների լուծման մեջ համագործակցելու կամքի հաստատումը:

Վերջում, ընկերնե՛ր, թույլ տվեք այստեղ ժամանած պատվիրակություն-ների անունից մեր անկեղծ երախտագիտությունը հայտնել լեհ ընկերներին, Լեհական միացյալ բանվորական կուսակցության Կենտրոնական կոմիտեին և Լեհական Ժողովրդական Հանրապետության կառավարությանը մեր նիստի նախապատրաստման ուղղությամբ նրանց կատարած մեծ աշխատանքի հա-մար, մեզ ցույց տրված ջերմ հյուրընկալության համար: Օգտվելով առիթից, աշխատանքային նոր հաջողությունների, բարգավաճման և երջանկության մեր ամենաբարի ցանկություններն եմ հաղորդում սոցիալիստական Լեհաս-տանի բոլոր աշխատավորներին:

Բաժակ եմ բարձրացնում՝

— մեր փառապանծ սոցիալիստական ընկերակցությա՛ն կենացը.

— մեր ընդհանուր մեծ գործի՝ կայուն խաղաղությա՛ն գործի, սոցիալիզմի և կոմունիզմի գործի կենացը:

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՂԲՅՈՒՐՈՅՈՒՄ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆՈՒՄ ԵՎ ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴՈՒՄ

*ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, քննարկելով Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի 1980 թվականի մայիսի 14—15-ը Վարշավայում տեղի ունեցած հոբելյանական խորհըրդակցության արդյունքները, ամբողջովին ու լրիվ հավանություն են տալիս ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Սովետական Միության պատվիրակության գործունեությանը:*

*Վարշավայի պայմանագրի ստորագրման ժամանակից ի վեր անցած քառորդ դարը ցույց է տալիս, որ սոցիալիստական պետությունների բազմակողմանի դաշինքը խաղաղության խոշորագույն գործոնն է Եվրոպայում և համաշխարհային մասշտաբով: Նա հուսալիորեն պաշտպանում է իր մասնակիցների սոցիալիստական նվաճումները, գործուն կերպով ծառայում խաղաղ համագործակցության շահերին:*

*Վարշավայի պայմանագրի մասնակից երկրները հանդես են եկել ու հանդես են գալիս լարվածության թուլացման պրոցեսը զարգացնելու և խորացնելու, միջազգային քաղաքական կլիման արմատապես առողջացնելու օգտին: Դա վերստին ծանրակշիռ կերպով հավաստում է Լեհական Ժողովրդական Հանրապետության մայրաքաղաքում քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության ընդունած դեկլարացիան:*

*Այդ կարևոր քաղաքական փաստաթղթում տրվում է եվրոպական և միջազգային արդի իրադրության խոր վերլուծությունը, բացահայտվում են դրա սըրման պատճառները: Իմպերիալիստները և հեգեմոնիստական ուժերը ձգտում են սաստկացնել սպառազինությունների մրցավազքը, կոնֆլիկտային իրադրություններ են ստեղծում, որը տանում է դեպի ռազմական սպառնալիքի աճ: ՆԱՏՕ-ի ղեկավար մարմինների վերջին՝ մայիսյան նիստում կրկին ընդունվեցին այդ ուղղությամբ ընթացող որոշումներ:*

*ՆԱՏՕ-ի վտանգավոր կուրսին Վարշավայի պայմանագրի մասնակից երկրները հակադրում էին գործողությունների լայն ծրագիր, որոնք կոչված են վերացնելու «սառը պատերազմի» վերսկսման սպառնալիքը, ամրապնդելու վստահությունն ու փոխըմբռնումը միջազգային հարաբերություններում, իրադարձությունների ընթացքն ուղղելու դեպի առողջ, խաղաղ հուն: Նրանք եռանդագին հանդես են գալիս այն բանի օգտին, որ անշեղորեն, լրիվ ծավալով կենսագործվեն Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցության ընդունած եզրափակիչ ակտի բոլոր սկզբունքներն ու դրույթները: Եվրոպական գործերում կարևոր կոնստրուկտիվ դեր կարող են կատարել 1980 թվականի աշնանը Մադրիդում կայանալիք հանդիպումը, Եվրոպայում ռազմական լարվածության թուլացմանն ու զինաթափմանը նվիրված կոնֆերանսի գումարումը և բեղմնավոր աշխատանքը:*

*Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության որոշումները կոչված են նոր ուժեղ ազդակ հանդիսանալու լարվածության թուլացման պրոցեսի համար: Սովետական մարդիկ հույս են հայտնում, որ սոցիալիստական պետությունների նախաձեռնությունները ըմբռնում և աջակցություն կգտնեն Արևմուտքի երկրների հասարակական կարծիքի, ժողովուրդների և կառավարությունների կողմից:*

*ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մյուս անդամների կողմից խթանվող սպառազինությունների մրցավազքը Վարշավայի պայմանագրի մասնակիցներին հարկադրում է անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել իրենց պաշտպանունակությունն ամրապնդելու համար: Բայց այդ բնագավառի նրանց բոլոր միջոցառումները չեն սպառնացել ու չեն սպառնում որևէ պետության անվտանգությանը:*

*Սոցիալիզմի իդեալը եղել ու մնում է զինաթափումը: Վարշավայի պայմանագրի մասնակից երկրները հանդես են գալիս զինաթափման շուրջը ներկայումս անցկացվող բոլոր բանակցություններում պայմանավորվածությունների հասնելու օգտին և այն ուղղություններում բանակցությունները վերսկսելու օգտին, որոնցում դրանք ընդհատված են: Այս տեսակետից մեծ նշանակություն կունենար (ՍՍՍ—2) պայմանագրի ուժի մեջ մտնելը, որի վավերացումը շարունակում է ձգձգել ամերիկյան կողմը: Անհրաժեշտ և հնարավոր են Եվրոպայում միջին հեռավորության հրթիռամիջուկային զենքը սահմանափակելու բանակցությունները: Դրա վերաբերյալ Սովետական Միության առաջարկությունները հայտնի են. եթե ՆԱՏՕ-ն չեղյալ հայտարարի ամերիկյան միջին հեռավորության հրթիռամիջուկային զենքի նոր տիպեր արտադրելու և տեղաբաշխելու որոշումը, կամ առնվազն՝ դադարեցնի դրա իրագործումը, այդ կարևոր պրոբլեմի շուրջը բանակցություններ կսկսվեն:*

*Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունը դարձավ ինտերնացիոնալիզմի սկզբունքներին եղբայրական երկրների խորին նվիրվածության, այն բոլոր ժողովուրդների հետ նրանց անշեղ համերաշխության նոր ցույցը, որոնք պայքարում են հանուն քաղաքական ու տնտեսական անկախության ամրապնդման, հանուն իրենց ճակատագիրը ինքնուրույնաբար տնօրինելու իրավունքի: Վճռականորեն դատապարտելով իմպերիալիզմի ու հեգեմոնիզմի ուժերի կոպիտ միջամտությունը ուրիշ պետությունների ներքին գործերին, նրանք հաստատակամորեն հանդես են գալիս գոյություն ունեցող կոնֆլիկտները քաղաքական միջոցներով կարգավորելու օգտին և նշում այն կոնկրետ ուղիները. որոնք կարող էին հանգեցնել միջազգային քաղաքականության բարդ հանգույցների լուծմանը:*

*ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը կարևոր նշանակություն են տալիս ամենամոտ ժամանակներս աշխարհի բոլոր շրջանների պետությունների ղեկավարների ամենաբարձր մակարդակով հանդիպում անցկացնելու առաջարկությանը: Այդպիսի հանդիպումը կարող էր ուշադրությունը կենտրոնացնել միջազգային կյանքի արմատական հարցերի վրա, որոշել միջազգային լարվածության օջախները վերացնելու և պատերազմ թույլ չտալու ուղիները:*

*Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները հանդես են գալիս սոցիալական տարբեր սիստեմների պատկանող երկրների երկխոսությունը շարունակելու և խորացնելու օգտին, բոլոր խաղաղասեր պետությունների լայն փոխգործողության օգտին: Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունը ճիշտ կողմնորոշիչներ է տալիս Եվրոպայում ու ամբողջ աշխարհում խաղաղության ամրապնդման ուղղությամբ առաջ ընթանալու համար:*

*ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը համոզված են, որ սոցիալիզմի եղբայրական երկրների բարեկամությունն ու համախմբվածությունը, բոլոր խաղաղասեր պետությունների և հասարակական լայն ուժերի հետ նրանց համագործակցության հետագա զարգացումը կհանգեցնեն լարվածության թուլացման քաղաքականության նոր հաջողությունների, ութսունական թվականները կդարձնեն խաղաղության և խաղաղ ստեղծարար աշխատանքի տարիներ:*

Սովետական Հայաստանի և ՀԿԿ
կազմավորման 60-ամյակին ընդառաջ

# ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԷՆԵՐԳԵՏԻԿԱՅԻ ԱՅՍՕՐՆ ՈՒ ՎԱՂԸ

**Խմբագրության աշխատակից Ս. Գ. ՀՈՎՍԵՓՅԱՆԸ եղավ ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ Կ. Հ. ԴԱՄԲԱՐՅԱՆԻ մոտ և խնդրեց նրան պատասխանել հանրապետության էներգետիկայի զարգացման ու հեռանկարների վերաբերյալ մի քանի հարցերի:**

**Ստորև հրապարակում ենք հարցազրույցը:**

— Պատմեցեք, խնդրեմ, ժողովրդական տնտեսության զարգացման արդի փուլում էներգետիկայի դերի մասին:

— *Մեր ժամանակներում էներգետիկան, ըստ էության, ինչպես էկոնոմիկայի և տեխնիկայի, այնպես էլ մարդկանց կյանքի հիմքն է:*

*Ժողովրդական տնտեսության ողջ սիստեմում ջերմաէներգետիկ կոմպլեքսի նշանակությունն անընդհատ մեծանում է, ընդլայնվում են նրա զարգացման մասշտաբները, բարդանում խնդիրները: Էկոնոմիկայի զարգացման այդ առանցքային պրոբլեմին առանձնահատուկ ուշադրություն նվիրեց կուսակցության Կենտկոմի 1979 թ. նոյեմբերյան պլենումը: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառում պարունակված դրույթներն ու հետևությունները ծրագրային բնույթ ունեն, որոնք վերաբերում են այնպիսի կարևորագույն հարցերի, ինչպիսիք են՝ ջերմաէներգետիկ բալանսի կատարելագործումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, էներգիայի նկատմամբ ժողովրդական տնտեսության աճող պահանջմունքների հուսալի բավարարման ապահովումը, խնայողության և տնտեսման ամբողջ աշխատանքի մակարդակի բարձրացումը:*

*Արդյունաբերական արտադրության, ինչպես և ամբողջ ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացումը նշանակում է բոլոր ճյուղերի փոխադրում մեքենայական առաջավոր տեխնիկայի և տեխնոլոգիայի բազայի վրա: Օգտագործված էլեկտրաէներգիայի քանակությունը պայմանավորում է արտադրության էլեկտրազինվածությունը և աշխատանքի արտադրողականությունը: Չէ՞ որ կոմպլեքսային մեքենայացումը, տեխնոլոգիական նոր պրոցեսների՝ էլեկտրաթերմիայի, էլեկտրամետալուրգիայի, էլեկտրաքիմիայի ներդրումը, արտադրության ավտոմատացումը, աշխատանքի արտադրողականության կտրուկ բարձրացումը սերտորեն առնչվում են էլեկտրաէներգիայի սպառման աճի հետ:*

— Ինչպես հայտնի է, Հայաստանի էներգետիկ սիստեմը միութենական միացյալ էներգասիստեմի բաղկացուցիչ մասն է: Խնդրում ենք պատմել երկրի էներգետիկայի զարգացման հիմնական փուլերի և միասնական էներգասիստեմի կառուցվածքի մասին:

— *Մեր երկրում ստեղծվել է աշխարհում խոշորագույն ջերմաէներգետիկ կոմպլեքս: Միայն ընթացիկ հնգամյակի անցած չորս տարում գործարկվել են 40 մլն կիլովատ էներգետիկ հզորություններ: Անցյալ տարի երկրի էլեկտրակայաններն արտադրել են 1,2 տրիլիոն կվտ-ժամ էներգիա:*

*...Իսկ ամեն ինչ սկսվեց ԳՈԷԼՌՕ-ի նշանավոր պլանից:*



*Սովետների համառուսաստանյան VIII համագումարում, 1920 թ. դեկտեմբերին ընդունված այդ ծրագրում գիտականորեն հիմնավորված են երկրի էներգետիկ բազայի ստեղծման հիմնական ուղղությունները: Դա մարդկության պատմության մեջ առաջին միասնական ժողովրդատնտեսական պլանն էր, որի նպատակն էր սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը: ԳՈԷԼՌՕ-ի պլանը, ինչպես հայտնի է, կատարվեց նվազագույն ժամկետում՝ 10 տարում, իսկ 1935 թ. այն գերակատարվեց երեք անգամ: Սովետական երկիրը դուրս եկավ համաշխարհային առաջատար բնագծեր: Եթե 1913 թ. երկրի էլեկտրակայանների ընդհանուր հզորությունը հազիվ էր անցնում մեկ միլիոն կիլովատից, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը 2 միլիարդ կվտ-ժամից, ապա 1940 թ. այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմեցին՝ 11,2 միլիոն կիլովատ և 48,6 միլիարդ կվտ-ժամ:*

*Չնայած պատերազմի տարիներին կրած ծանր վնասին, երբ կորցրինք երկրի էներգետիկ հզորությունների մոտ կեսը, արդեն 1947 թ. ՍՍՀՄ-ը գերազանցեց նախապատերազմյան մակարդակը: Կցանկանայի հիշատակել մի քանի բնորոշ թվեր. 1950 թ. երկրում էլեկտրաէներգիայի արտադրությունը հասավ 91,2 մլրդ կվտ-ժամի, 1970-ին՝ 740,9, իսկ 1975-ին անցավ մեկ տրիլիոնի բնագիծը:*

*Երկրի ամբողջ էներգասիստեմն այսօր մի հզոր և բարդ կոմպլեքս է, որում կարևոր դեր ունեն էներգասիստեմների զարգացումն ու միասնականացումը: Տեղի է ունենում էլեկտրաէներգիայի արտադրության և մատակարարման կենտրոնացման մշտական պրոցես: Ներկայումս գործում է 95 էներգետիկ սիստեմ՝ միավորված 11 միացյալ էներգասիստեմի (մէս) կազմում: ՍՍՀՄ միասնական էներգետիկ սիստեմն ընդգրկում է 9 մէս և 79 էներգասիստեմ, որոնք տալիս են էլեկտրաէներգիայի ամբողջ արտադրության 90 տոկոսը: Էներգասիստեմների միավորումը կատարվում է բարձր և գերբարձր լարվածության (500 կվ, 750 կվ և ավելի) էլեկտրահաղորդման գծերի կառուցման միջոցով:*

*Մեր երկրի էներգասիստեմը «Միր» ցանցի միջոցով էլեկտրաէներգիա է արտահանում սոցիալիստական երկրներ, ինչպես նաև Ֆինլանդիա և Նորվեգիա: 1970 թ. արտահանվել է 5,1 մլրդ, իսկ 1976-ին՝ 11,6 մլրդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա:*

*Երկրի էներգետիկ հզորությունների կառուցվածքն աստիճանաբար փոխվում է: Եթե սկզբնական շրջանում հիմնականում կառուցվում էին հիդրոէլեկտրակայաններ, ապա հետագայում մեծ թափ ստացավ առավել խնայողաբեր ջերմային և ատոմային էլեկտրակայանների շինարարությունը: Արդեն 1976 թ. ջէկ-երի բաժինը էներգետիկ հզորությունների ընդհանուր ծավալում հասավ 78,3 տոկոսի, իսկ հէկ-երինը իջավ 18,9 տոկոսի (աէկ-ները՝ 2,8 տոկոս): Ընդ որում, բնորոշ է էլեկտրակայաններում հզորությունների կենտրոնացումը: Բավական է հիշատակել, որ ջերմաէլեկտրակայանների կեսը ունեն 1 և 2 մլն կվտ հզորություն: Հզորությունների կենտրոնացումը հիդրոէլեկտրակայաններում ավելի բարձր է: Ընդ որում, հույժ խնայողաբեր հզոր հիդրոէլեկտրակայանների կառուցումն իրականացվում է ժողովրդատնտեսական ուրիշ կարևոր խնդիրների լուծմանը զուգընթաց (ոռոգում, նավագնացություն և այլն): Ատոմային էլեկտրակայանները հագեցվում են 440 և 1000 մվտ հզորության ռեակտորներով: 1977 թ. երկրում գործում էին 11 աէկ-ներ՝ 7 մլն կվտ ընդհանուր հզորությամբ: Կառուցվում և վերակառուցվում են 11 աէկ-ներ՝ 2—6-ական մլն կվտ նախագծային հզորությամբ:*

*ՍՍՀՄ-ի բաժինը էլեկտրաէներգիայի համաշխարհային արտադրության մեջ անշեղորեն աճում է: 1950 թ. այն կազմել է 9,2, իսկ 1977-ին՝ 16 տոկոս:*

— Իսկ ինչպե՞ս է զարգացել մեր հանրապետության էներգետիկան 60 տարում:

— *Հանրապետության էներգետիկայի բուռն զարգացումը կոմունիստական կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքականության փայլուն մարմնավորումն է: ԳՈԷԼՌՕ-ի պլանում, ինչպես նաև ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլաններում բազմակողմանիորեն հաշվի են առնված միութենական հանրապետությունների շահերը:*

Նախասովետական Հայաստանում, որը ծայրահեղ թշվառ վիճակում էր, էներգետիկան իրականում գոյություն չուներ: Սովետական իշխանության հաստատումից հետո Կովկասի և Անդրկովկասի կոմունիստներին 1921 թ. ապրիլի 14-ին Վ. Ի. Լենինի գրած հայտնի նամակում առաջադրվեց երկու հիմնական խնդիր՝ ոռոգման զարգացումը և էլեկտրիֆիկացիան՝ ջրային էներգիայի օգտագործմամբ:

Սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի իրականացման առաջնեկը մեր հանրապետությունում լեգենդար Շիր-կանալն էր՝ Շիրակի Վ. Ի. Լենինի անվան ոռոգման ջրանցքը (1925 թ.) և դրա վրա կառուցված՝ Լենինականի Ս. Օրջոնիկիձեի անվան հիդրոէլեկտրակայանը՝ 5,2 հազար կվտ հզորությամբ: 1926 թ. գործարկվեց Երևանի № 1 հէկ-ը (մոտ 5 հազար կվտ) և 1932 թ. Երևանի № 2 հէկ-ը (2,4 հազար կվտ): Այս կայանները հնարավորություն ընձեռեցին արագորեն զարգացնելու արդյունաբերության մի շարք ճյուղեր. էլեկտրականությունը մուտք գործեց հայ շինականի կենցաղում:

Հայաստանում սոցիալիզմի կառուցման հիրավի փայլուն էջ գրվեց 1932 թ. Ս. Տեր-Գաբրիելյանի անվան Ձորագէսի գործարկմամբ (22,5 հազար կվտ): Դրա շնորհիվ սկսվեց գունավոր մետալուրգիայի և քիմիական արդյունաբերության զարգացումը:

Սակայն հանրապետության արտադրաուժերի բուռն զարգացումը հրամայաբար պահանջում էր հզոր էներգետիկ բազայի ստեղծում: Ջերմային ռեսուրսների բացակայության պայմաններում այդպիսի բազա հանդիսացավ Սևան—Հրազդան հէկ-երի ոռոգման-էներգետիկ սիստեմը:

1936 թ. դեկտեմբերին կասկադի առաջնեկի՝ Հ. Տեր-Աստվածատրյանի անվան Քանաքեռգէսի գործարկմամբ Հայաստանը հաստատուն կերպով բռնեց առաջավոր ինդուստրիայի զարգացման ուղին: Հանրապետության էներգետիկայի զարգացման նոր փուլ հանդիսացավ 1938 թ., երբ էլեկտրահաղորդման միացնող գծերի շինարարության ավարտմամբ կազմավորվեց հայկական էներգետիկ սիստեմը: Բնական է, որ Հայրենական պատերազմի տարիներին դադարեց հանրապետության էներգետիկայի հետագա զարգացումը: Ետպատերազմյան տարիներին Սովետական Հայաստանի արդյունաբերությունն սկսեց զարգանալ առանձնապես բարձր տեմպերով, և օրակարգի հարց դարձավ Սևան—Հրազդան կասկադի մյուս հէկ-երի արագացված կառուցումը: 1949 թ. գործարկվեց Սևանի հէկ-ը, 1953 թ.՝ Գյումուշի, 1956-ին՝ Արզնիի, 1959-ին՝ Աթարբեկյանի և վերջապես 1962-ին՝ Լ. Խաչատրյանի անվան Երևանի հիդրոէլեկտրակայանները: Կասկադը միաժամանակ կենարար ջուր տվեց Արարատյան դաշտի 120 հազար հեկտար պապակ հողերին, որոնք ամուր բազա դարձան հանրապետության գյուղատնտեսության հետագա զարգացման համար:

Սակայն մեր արդյունաբերությունը բուռն կերպով զարգանում էր և առկա հիդրոռեսուրսները չէին կարող բավարարել հանրապետության էլեկտրաէներգիայի պահանջմունքները: Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը մի շարք անհետաձգելի միջոցառումներ մշակեցին, որոնք կոչված էին հիմնովին լուծելու մեր հանրապետության էներգետիկ պրոբլեմը: 1963 թ. սկսած Հայաստանի էներգետիկայի կառուցվածքը արմատապես փոխվեց ջերմային հզոր էլեկտրակայանների կառուցմամբ: Գործարկվեց բնական գազով աշխատող Երևանի ջէկ-ի առաջին ագրեգատը՝ 50 մվտ հզորությամբ: Բացի այդ, 1960 թ. շահագործման հանձնվեց 330 հազար վոլտ լարվածությամբ միջսիստեմային էլեկտրահաղորդման գիծը՝ Ադստաֆայից մինչև հայկական էներգասիստեմ: Դրանով Հայաստանը Անդրկովկասյան միացյալ էներգասիստեմից սկսեց ստանալ լրացուցիչ քանակությամբ էլեկտրաէներգիա: Նշված արմատական միջոցառումների շնորհիվ հնարավորություն ընձեռվեց, չթուլացնելով հանրապետության տնտեսական զարգացման տեմպերը, պակասեցնելու Սևանա լճից ջրի բաց թողումը, միաժամանակ զարգացնելով ջերմաէներգետիկան:

1965 թ. Սևանա լճից ջրի բացթողումը կրճատվեց 2,5 անգամ, իսկ 1977 թ. լիովին դադարեցվեց էներգետիկ նպատակներով ջրահոսքը Սևանից: Միաժամանակ լրացուցիչ արմատական միջոցառումներ են իրականացվում Սևանա լճի մակարդակը ո՛չ միայն պահպանելու, այլև հնարավորին չափ բարձրացնելու



նպատակով: Դրանցից հիմնականը Արփա գետի ջրի մի մասի հոսքամղումն է դեպի Սևան: 49 կիլոմետրանոց հազվագյուտ թունելը, ինչպես հայտնի է, արդեն բացված է, այն շահագործման կհանձնվի այս տարի: Բացի այդ, իրականացված է ոռոգման նպատակով ջրի մի շարք նոր աղբյուրների օգտագործումը, կառուցվում են նոր ջրամբարներ և ջրհան կայաններ: Զարկ է տրվում արդյունաբերության սակավ էներգատար ճյուղերի ստեղծմանն ու զարգացմանը: Այսպիսով, Սևանը, որը պատմական անհրաժեշտության բերումով 40 տարի նյութական հզոր բազա ապահովեց հայ ժողովրդի նոր, գեղեցիկ կյանքի կառուցման համար, կուսակցության և ժողովրդի կամքով ընդմիշտ կպահպանվի:

Վերադառնալով հանրապետության էներգետիկայի զարգացման փուլերին, նշենք, որ Երևանի ջէկ-ից հետո, որի հզորությունը հասցվեց 550 հազար կվտ-ի, գործարկվեց Հրազդանի հզոր պշէկ-ը՝ 1110 հազար կվտ և Կիրովականի ջէկ-ը՝ 96 հազար կվտ հզորությամբ: Սկսվեց Որոտանի կասկադի շինարարությունը: Գործարկվեցին Տաթևի և Շամբի հէկ-երը:

Հանրապետության էներգետիկայի զարգացումը նոր փուլ թևակոխեց երեք տարի առաջ, երբ շահագործման հանձնվեց հայկական ատոմակայանի առաջին ռեակտորը՝ 407,5 հազար կվտ հզորությամբ: Երկրորդ բլոկը գործարկվեց 1979 թ. վերջերին, որով հանրապետության բոլոր էլեկտրակայանների սահմանված հզորությունը կազմեց 3,5 մլն կվտ: Առաջիկայում այն կաճի ի հաշիվ Որոտանի կասկադի երրորդ կայանի՝ Սպանդարյանի հէկ-ի գործարկման (76 հազար կվտ):

**— Ինչպիսի՞ն են հանրապետության էներգետիկ հզորությունների կառուցվածքը, էներգետիկ բալանսը և պոտենցիալ կարողությունները:**

— Ինչպես ասվեց, հանրապետությունում ստեղծված է էներգետիկ հզոր կոմպլեքս: Ամենայն հավանականությամբ, ընթերցողների համար հետաքրքրական կլինի ծանոթանալ հանրապետության հիդրոէլեկտրակայանների ցանցին:

Ներկայումս «Հայգլխէներգոյի» սիստեմում գործում են ութ խոշոր հիդրոէլեկտրակայաններ: Սևան—Հրազդան կասկադի 6 կայաններից խոշորներն են Գյումուշի հէկ-ը՝ 224 հազար կվտ և Քանաքեռի հէկ-ը՝ 102 հազար կվտ հզորությամբ: Կասկադի մյուս կայաններն են Աթարբեկյանը (81 հազար կվտ), Արզնին (70 հազար կվտ), Երևան—1 կայանը (44 հազար կվտ) և Սևանի հէկ-ը (34 հազար կվտ):

Սևան—Հրազդան կասկադի կայանների ընդհանուր հզորությունը հասնում է 555 հազար կվտ-ի: Այժմ դրանք տարեկան արտադրում են 700 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա: Այս կայաններն աշխատում են Հրազդան գետի բնական հոսքով և ոռոգման նպատակով հոսող ջրերով: Ինչպես նշվեց, զուտ էներգետիկ նպատակներով Սևանա լճից ջուր բաց չի թողնվում:

Բացի վերոհիշյալ կայաններից, հանրապետությունում գործում են ևս 17 միջին և փոքր հիդրոէլեկտրակայաններ, որոնք տալիս են 150 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա: Այսպիսով, հանրապետության բոլոր հէկ-երը միասին արտադրում են 1.500 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա:

Հիդրոէներգետիկան հանրապետության էներգետիկ սիստեմում տասնյակ տարիներ առաջատար էր: Սակայն 60-ական թվականներից սկսած էներգետիկ հզորությունների կառուցվածքը որակական փոփոխություններ կրեց և այսօր էլեկտրական էներգիայի արտադրության ընդհանուր ծավալում առաջատար տեղ են զբաղեցնում ջերմային էլեկտրակայանները (68 տոկոս), ատոմային էլեկտրակայանի բաժինը կազմում է 19,5 տոկոս, հիդրոէլեկտրակայաններինը՝ 12,5 տոկոս:

Հանրապետության էներգետիկայի հետագա զարգացումը պայմանավորվում է հիդրոռեսուրսների սահմանափակ լինելով և սեփական վառելանյութի բացակայությամբ: Ուստի ժողովրդական տնտեսության բուռն վերելքի պայմաններում էներգետիկայի պրոբլեմի ճիշտ լուծումը կհանգեցնի վառելիքային և ջրային ռեսուրսների խնայողությանը: Այս առումով մեզ առավել ռացիոնալ են թվում էներգետիկայի զարգացման հետևյալ ուղղությունները: Նախ՝ Երևան քաղաքի ջերմաֆիկացման նպատակով անհրաժեշտ կլինի կառուցել նոր, ժամա-

բենզաէլեկտրական ագրեգատների արտադրությունը, որոնք կարելի լինի օգ-
տագործել արոտավայրերում և բնակավայրերից հեռու ընկած գյուղատնտե-
սական այլ օբյեկտներում։ Այդ խնդրի շուտափույթ լուծումը առանձնապես
հրատապ է մեր հանրապետության համար։

Մեր առջև խնդիր է դրված արագացնել գյուղատնտեսական արտադրու-
թյան մեջ էլեկտրաէներգիայի հետագա ներդրումը՝ նպատակ ունենալով անաս-
նապահության և հողագործության արտադրապրոցեսների կոմպլեքսային մեքե-
նայացումը, ինչպես նաև գյուղական բնակչության կուլտուր-կենցաղային
սպասարկման ոլորտը։

— Խնդրում ենք ավելի մանրամասն պատմել կենցաղում գործադրվող
էներգիայի մասին։

— Արդեն ասացինք, որ էլեկտրական էներգիան լայնորեն մուտք է գործել
կենցաղ, զգալի չափով աճել է կոմունալ-կենցաղային կարիքների համար
ծախսվող էլեկտրաէներգիան։ Հեռուստացույցը, սառնարանը, փոշեծծիչը, հա-
տակափայլիչը, էլեկտրասալիկները և այլն, լայնորեն մտել են ո՛չ միայն քա-
ղաքացիների, այլև գյուղացիների կենցաղը։ Եթե 1970 թ. կոմունալ-կենցա-
ղային կարիքների համար ծախսվել է 682 միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիա,
1979 թ. այն կազմել է 1,45 միլիարդ և աճել է ավելի քան 2 անգամ։ Աճի
բարձր տեմպերը առաջիկայում ևս կպահպանվեն։

Ինչպես հայտնի է, կառավարության որոշմամբ նորակառույց բոլոր բնա-
կելի շենքերում արդեն մի քանի տարի է գազօջախների փոխարեն տեղակայ-
վում են խոհանոցային էլեկտրասալիկներ։ Առաջիկա տարիներին նախատես-
վում է բոլոր շահագործվող գազօջախները փոխարինել էլեկտրասալիկներով։

Կենցաղում էներգիայի օգտագործման մեծ բաժինն ընկնում է բնակա-
րանների ջեռուցմանը։ Միայն Երևան քաղաքում ջէկ-ին զուգահեռ գործում են
800 արդյունաբերական և կոմունալ-կենցաղային կաթսայատներ։ Այսպիսով,
մեր մայրաքաղաքում և առհասարակ հանրապետությունում, ջերմամատակա-
րարումը հիմնականում ապակենտրոնացված է։ Այսպիսի վիճակը, բնական է,
որ չի բավարարում այսօրվա պահանջներին և միջոցառումներ են մշակվում
ջերմամատակարարման գործը արմատապես բարելավելու համար։ Արդեն
կազմված է Երևանի ջեռուցման ցանցի գլխավոր սխեման՝ մինչև 1990 թ., որով
նախատեսվում է կառուցել ընդամենը 13 կենտրոնական կաթսայատներ, որոնք
կփոխարինեն գործողներին։

Սխեմայի առավել նպատակահարմար տարբերակը նախատեսում է երկ-
րորդ ջերմաէլեկտրակենտրոնի կառուցումը և նշված կենտրոնական կաթսայա-
տների օգտագործումը գերբեռնված ժամանակաշրջանում՝ առավել ցածր ջեր-
մաստիճանների դեպքում։

Միաժամանակ մեծանում է ջերմամատակարարման հուսալիությունը և
տաք ջուր մատակարարելու հնարավորությունը։

— Ի՞նչ կասեիք գազի, դրա կիրառման աշխարհագրության և հնարավո-
րությունների մասին։

— Գազը հիմնովին մուտք է գործել մեր ամբողջ ժողովրդական տնտեսու-
թյան մեջ, մտել է մարդկանց կենցաղը։ Հեռավոր հանքավայրերից այն սպա-
ռողներին հասցնելու համար կառուցվում են խողովակային գազամուղներ։

Մեր երկրում գազամուղների ընդհանուր երկարությունը 117 հազար կիլո-
մետր է, իսկ ընթացիկ տարվա վերջում կավելանա ևս 10 հազար կիլոմետրով։

Մեր հանրապետության գազիֆիկացիան ունի ընդամենը երկու տասնամ-
յակի պատմություն։ Սակայն այդ կարճ ժամանակամիջոցում մենք հասել ենք
մեծ հաջողությունների։ Գազիֆիկացման հիմնական ցուցանիշներով մենք
Միության մեջ առաջատար տեղ ենք զբաղեցնում։ Հանրապետությունում գա-
ռուցվել են 4 հազար կմ գազամուղ, 680 գազակարգավորիչ կետ, գազիֆիկաց-
վել են 24 քաղաք, 36 քաղաքատիպ ավան, 900 բնակավայր, 560 հազար բնա-
կարան, այդ թվում՝ 170,5 հազարը գյուղական վայրերում։ Բնական գազից
օգտվում են 450 արդյունաբերական և գյուղատնտեսական ձեռնարկություն-
ներ, 1550 ջեռուցման կաթսայատներ։ Այն մուտք է գործել հանրապետության



ամենահեռավոր անկյունները։ Այսօր Սովետական Հայաստանի քարտեզի վրա
անհնար է գտնել թեկուզ մեկ բնակավայր, որտեղ մուտք գործած չլինեն բնա-
կան կամ հեղուկ գազը։ Այսօր գազիֆիկացված է հանրապետության բնակելի
ֆոնդի 95 տոկոսը, այդ թվում գյուղական բնակավայրերում՝ 82 տոկոսը։ Նա-
խատեսվում է մինչև ընթացիկ տարվա վերջը գյուղական վայրերում բնակելի
ֆոնդի գազիֆիկացումը հասցնել 90 տոկոսի։

Ինչպես հայտնի է, բնական գազն ունի բազմակողմանի կիրառում։ Այսօր-
վա դրությամբ ստացվող գազի մոտ 20 տոկոսը քիմիական արդյունաբերության
մեջ վերամշակվում է որպես հումք, 17,5 տոկոսը օգտագործվում է էներգետի-
կայի կարիքների համար, 34 տոկոսը՝ արդյունաբերական ձեռնարկություննե-
րում և 29—30 տոկոսը՝ բնակչության կոմունալ-կենցաղային կարիքների հա-
մար։

Ընթացիկ տարում հանրապետությունում կսպառվի 2.850 մլն խմ բնական
և 33 հազար տոննա հեղուկ գազ։ Դրանով մեր ջերմային բալանսում գազի տե-
սակարար կշիռը կհասնի 53 տոկոսի։

Կարևոր նշանակություն կունենա Եվլախ—Գորիս—Ղափան—Քաջարան
գազամուղը, որով կիրականացվի հանրապետության հարավ-արևելյան մասի
գազիֆիկացումը։

Մեր զարգացող էկոնոմիկան պահանջում է ամենօրյա հոգատարություն
ցուցաբերել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերին, ինչպես նաև ազգա-
բնակչությանը էլեկտրաէներգիայով, գազով, ջերմային էներգիայով անխափան
մատակարարելու նկատմամբ։ Դրա հուսալի նախադրյալներն են ջերմաէներգե-
տիկ պոտենցիալի հարաճուն մեծացումը, հանրային արտադրության արդյու-
նավետության և աշխատանքի որակի բարձրացումը։

Մեր խնդիրն է հաջողությամբ լուծել էներգետիկայի զարգացման վերա-
բերյալ ՍՄԿԿ XXV համագումարի, Կենտկոմի նոյեմբերյան (1979 թ.) պլենումի
որոշումները։ Տնտեսական աճի բարձր տեմպերի ապահովման ամենահիմնա-
կան պայմաններից մեկը ջերմաէներգետիկ բազայի առաջանց զարգացումն է,
ժողովրդական տնտեսության էներգա և մեքենազինվածության բարձրացումը։
Իզուր չի ասված, որ ժամանակակից աշխարհում էներգիայի բոլոր տեսակների
արտադրության և սպառման մակարդակը բնութագրում է նաև հասարակու-
թյան տնտեսական զարգացման աստիճանը։

Ընթացիկ տարում նրանց համար լրացուցիչ կարտադրվի մեկ միլիոն 700 հազար հատ տրիկոտաժե-բամբակյա սպիտակեղեն, 260 հազար կոմպլեկտ՝ նորածինների սպիտակեղեն, 400 հազար զույգ մանկական կալգոտկաներ և այլ իրեր:

Ընթացիկ հնգամյակում զգալի բարեփոխություններ են կատարվում արտադրանքի տեսականու և որակի բարելավման մարզում, որի շնորհիվ տարեցտարի ավելանում են թողարկվող նոր արտադրատեսակներն ու պետական որականիշով արտադրանքի ծավալը:

1979 թ. նորացվել է տրիկոտաժի արտադրատեսակների կեսը, կարի արտադրանքի՝ 72 տոկոսը, կոշկեղենի՝ 95 տոկոսը: Այժմ պետական որականիշ ունեցող արտադրատեսակների թիվը անցնում է 900-ից, իսկ դրանց տեսակարար կշիռը արտադրանքի ողջ ծավալի մեջ կազմում է 20 տոկոս՝ 1975 թվականի 5,2 տոկոսի համեմատ: Արտադրանքի որակի բարձրացումը ապահովվել է որակի կառավարման կոմպլեքս համակարգի շնորհիվ, որը ներդրվել է մինիստրության բոլոր ձեռնարկություններում: Աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու և վերջնական լավագույն արդյունք ստանալու համար մինիստրությունն իր հիմնական խնդիրն է համարում, մի կողմից՝ գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինումը և տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործումը, մյուս կողմից՝ դրանց վերակառուցումը, ընդլայնումն ու վերազինումը տեխնիկայի արդի մակարդակին համապատասխան:

Ավտոմատ հոսքային գծերի, ագրեգատների, մեքենայացման և ավտոմատացման բարձր մակարդակ ունեցող մեքենասարքավորումների նոր տեսակների ներդրումը, տեխնոլոգիական պրոցեսների կրճատումը, բեռնմանբեռնաթափման և տրանսպորտային աշխատանքների մեքենայացումը դարձան ճյուղի տեխնիկական վերազինման հիմնական ուղղությունները: Ընթացիկ հնգամյակի չորս տարում մինիստրության ձեռնարկություններում տեղադրված է ավելի քան 13 հազար միավոր նոր բարձր արտադրողական մեքենասարքավորում, գրեթե այնքան, որքան ամբողջ իններորդ հնգամյակում: Դրա շնորհիվ տեխնոլոգիական սարքավորումների գործող պարկը նորացվել է 80 տոկոսով: Արտադրության մեջ ներդրվել է նոր տեխնիկայի և պրոգրեսիվ տեխնոլոգիայի մոտ 500 միջոցառում: Կոմպլեքս մեքենայացվել է 8 արտադրամաս և 2 տեղամաս, ներդրվել են 15 հոսքային գիծ, տրանսպորտային 34 մեքենայացված գծեր և կոնվեյերներ: Մեքենայացման ընդհանուր մակարդակը ճյուղում այժմ կազմում է 71 տոկոս:

Մինիստրության տասներորդ հնգամյակի տնտեսական և սոցիալական զարգացման կոմպլեքս պլանի կարևոր հատվածը ձեռքի աշխատանքի մեքենայացումն է: Մի շարք մեքենաներ և սարքավորումներ փոխարինվել են նորերով, որոնց մեջ համատեղված են մի քանի տեխնոլոգիական պրոցեսներ: Մանվածքային արտադրության մեջ տեղադրվել են անիլիկ պնևմատիկ գործող մեքենաներ, որոնք կրկնակի արտադրողական են ավանդական մանող մեքենաներից և, որի շնորհիվ ձեռքի մի շարք աշխատանքներ կրճատվել են: Տեղադրվել են նաև նոր տիպի-մանող-ոլորող մեքենաներ, որոնց մեջ համատեղված է չորս տեխնոլոգիական պրոցես (մանում, զույգավորում, ոլորում և վերափաթաթում):

Գործվածքային արտադրության մեջ սկսվել և շարունակվում են մեխանիկական գործող հաստոցների փոխարինումը բարձր արտադրողական պնևմատիկ, անմաքոք հաստոցներով: Մինչև հնգամյակի վերջը դրանցով կփոխարինվի տեքստիլ ձեռնարկությունների հաստոցների կեսը: Տեղադրվել և գործում են նոր տիպի ագրեգատներ՝ հատակի ծածկի և այլ իրերի արտադրության համար՝ հանրապետությունում բոլորովին նոր՝ ասեղնածակատման մեթոդով: Մեծ քանակությամբ նոր տիպի մեքենասարքավորումներ են տեղադրվել նաև տրիկոտաժի, կարի, կոշիկի, կաշվի գալանտերեայի արտադրության մեջ:

Հարկ է նշել, որ 1979 թվականին շահագործման հանձնվեց ճյուղային կառավարման ավտոմատ սիստեմի առաջին հերթը, իսկ ընթացիկ տարում կավարտվի արտադրանքի որակի կառավարման ճյուղային կոմպլեքս սիստեմի մշակումը:

Ճյուղի գիտատեխնիկական առաջընթացի հաջորդ միջոցառումը գործող ձեռնարկությունների վերակառուցումն ու ընդլայնումն է գիտության և տեխ-



նիկայի արդի մակարդակին համապատասխան: Վերջին երկու հնգամյակների ընթացքում ճյուղի զարգացման համար հատկացվել են (հաշվի առնելով նաև 1980 թ. պլանը) մոտ 205 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ, ընդ որում, տասներորդում նախորդից 1,5 անգամ ավելի: Կապիտալ շինարարության ասպարեզում մինիստրության գործունեությունը բնութագրվում է երկու հատկանիշներով: Նախ, վերջին երկու հնգամյակների բոլոր տարիներին կատարվել և գերակատարվել են կապիտալ ներդրումների, առանձնապես շինմոնտաժային աշխատանքների պլանները, և կապիտալ ներդրումների 95 տոկոսը հատկացվել է գործող ձեռնարկությունների վերակառուցման, ընդլայնման և տեխնիկական վերազինման նպատակներին, որը վկայում է միջոցների արդյունավետ օգտագործման մասին: Իններորդ հնգամյակում համախառն արտադրանքի ծավալի բացարձակ աճը կազմեց 158 մլն ռուբլի, իսկ տասներորդում այն արդեն կհասնի մոտ 370 մլն ռուբլու: Ֆոնդահատույցը՝ համապատասխանաբար՝ 1,88 ռ. և 3,05 ռ., այսինքն՝ կապիտալ ներդրումների արդյունավետությունն այժմ ավելացել է 1,6 անգամ: Այստեղ վճռական դեր է խաղացել 45 ձեռնարկությունների, այդ թվում բոլոր խոշոր կոմբինատների ու ֆաբրիկաների վերակառուցումը, ինչպես նաև մասնաճյուղերի ստեղծումը:

Արմատապես վերակառուցվել են Նուրբ բրդյա գործվածքների կոմբինատը, մահուդի, դեկորատիվ գործվածքների, կաշվի գալանտերեայի, Կիրովականի և Լենինականի կոշիկի, Գորիսի, Արթիկի և Սպիտակի տրիկոտաժի, Երևանի կարի, Լենինականի զուլպա-նասկեղենի ֆաբրիկաները և այլ ձեռնարկություններ: Կառուցվել են նոր ձեռնարկություններ՝ Մասիսի կաշվի հումքի գործարանը, Ջարենցավանի կարի և Արտաշատի տեքստիլ-գալանտերեայի ֆաբրիկաները, սկսվել է նոր խոշոր մանվածքային ֆաբրիկայի շինարարությունը Մարալիկում:

Արտադրության արդյունավետության և որակի բարձրացման բնագավառում լուրջ ուշադրություն ենք նվիրում կառավարման սիստեմի անընդհատ կատարելագործմանը: Արտադրության կառավարման կառուցվածքի կատարելագործումն իրականացվեց ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներին համապատասխան՝ ըստ երկրի թեթև արդյունաբերության կառավարման գլխավոր սխեմայի: Վերակառուցումը հիմնված է արտադրամիավորումների ստեղծման վրա, քանի որ դրանք համապատասխանում են էկոնոմիկայի զարգացման արդի փուլին և լայն հնարավորություններ ընձեռում ժողովրդական տնտեսության կազմակերպչական կառուցվածքն ու կառավարումը բարելավելու համար:

Վերջին 4—5 տարիների փորձը լիովին հաստատեց կուսակցության տնտեսական քաղաքականության հրատապությունն այդ ասպարեզում: Եվ միանգամայն օրինաչափ է, որ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ տնտեսական մեխանիզմի կատարելագործման վերաբերյալ որոշման մեջ արտադրամիավորումներն ընդունված են որպես արդյունաբերության հիմնական տնտհաշվարկային օղակ:

Հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրության սիստեմում 1975 թ. կազմավորվեցին առաջին 11 արտադրամիավորումները: Այժմ դրանց թիվը հասնում է 17-ի: Այսօր մինիստրության արտադրամիավորումներին բաժին է ընկնում ողջ արդյունաբերական արտադրանքի ծավալի 67 տոկոսը, պետական որականիշով արտադրանքի՝ 84, շահույթի՝ 72, հիմնական ֆոնդերի՝ 60 տոկոսը: Հիշյալ ցուցանիշները վկայում են բանվոր-ծառայողների՝ 75, արտադրամիավորումների արդյունավետության մասին: Այդ է հաստատում արտադրամիավորումների 1976—1979 թթ. տնտեսական գործունեության մի շարք ցուցանիշների վերլուծությունը:

Բերված աղյուսակից երևում է, որ արտադրամիավորումներում արտադրանքի միջին տարեկան աճի տեմպը գերազանցում է, այսպես ասած, չմիավորված (ինքնուրույն) ձեռնարկությունների նույն ցուցանիշը 26 տոկոսով: Գոհացուցիչ են հատկապես արտադրանքի որակական ցուցանիշները. չորս տարում արտադրամիավորումներում պետական որականիշով թողարկվող արտադրանքի ծավալը 28,7 մլն ռուբլուց հասել է 175,3 մլն ռուբլու, իսկ չմիավորված ձեռնարկություններում այդ կարգի արտադրանքի ծավալը 7,6 միլիոնից հասավ միայն 21,9 մլն ռուբլու:

| Ցուցանիշները | 1979 թ. աճի տեմպը, 1975 թ. համեմատությամբ, տոկոսներով | | |
|---|---|---|---|
| | Մինիստրությունը ամբողջությամբ | Այդ թվում | |
| | | արտադրամիավորումներ | չմիավորված (ինքնուրույն) ձեռնարկություններ |
| Համախառն արտադրանքի ծավալը | 141,3 | 144,9 | 134,7 |
| Աշխատանքի արտադրողականությունը | 118,8 | 119,1 | 120,0 |
| Ֆոնդահատույցը | 100,9 | 104,0 | 95,4 |
| Մեկ աշխատողի ֆոնդազինվածությունը | 117,8 | 114,4 | 126,0 |
| Վարչակառավարչական ապարատի ծախսերը | 145,1 | 138,8 | 156,8 |
| Պետական որականիշով արտադրանքի ծավալը | 540,0 | 610,0 | 290,0 |
| Պետական որականիշով արտադրանքի ծավալի տեսակարար կշիռը համախառն արտադրանքի ծավալի մեջ | 19,8 | 26,7 | 6,4 |

Բարձր են ֆոնդահատույցի, ֆոնդազինվածության, ինչպես նաև վարչակառավարչական ծախսերի ցուցանիշները, որոնք բոլորն էլ վկայում են արտադրամիավորումների առավելությունների մասին: Ինչ վերաբերում է աշխատանքի արտադրողականությանը, ապա արտադրամիավորումներում դրա աճի չափավոր մակարդակը բացատրվում է միավորումների մասնաճյուղերի ինտենսիվ կազմակերպումով, որտեղ արտադրական գործունեության մեջ ներգրավված երիտասարդները, չունենալով մասնագիտական կրթություն, իրենց աշխատանքի առաջին մեկ-երկու տարում չեն կարող ապահովել բարձր արտադրողականություն: Այսպես, ընթացիկ տարվա պլանով միայն 1976—1979 թթ. կազմակերպված մասնաճյուղերի մեկ աշխատողի արտադրողականության մակարդակը կազմում է մոտ 12,5 հազար ռուբլի՝ մինիստրության 14,5 հազար ռուբլու համեմատ: Ժամանակի ընթացքում մասնաճյուղերի բանվորների մասնագիտական մակարդակի բարձրացման հետ այս տարբերությունը, անշուշտ, կվերանա:

Առանձին հետաքրքրություն են ներկայացնում մասնաճյուղերը, որոնց ինտենսիվ կազմակերպմանը մինիստրությունը ձեռնամուխ եղավ ընթացիկ հնգամյակում: Միայն վերջին չորս տարում կազմակերպվել և այժմ գործում են 53 մասնաճյուղ: Այդ մասնաճյուղերը, որոնք ստեղծվել են փոքր քաղաքներում, շրջանային կենտրոններում և գյուղերում, ընթացիկ տարում կթողարկեն մոտ 100 մլն ռուբլու արտադրանք կամ մինիստրության ողջ արտադրանքի ծավալի 9,5 տոկոսը: Մասնաճյուղերում աշխատում է մոտ 8000 մարդ:

Մասնաճյուղերի նշանակությունը մեծ է ոչ միայն նրանց արտադրանքի ծավալով: Դրանք հնարավորություն են ընձեռում գյուղական վայրերում հանրօգուտ աշխատանքի մեջ ներգրավելու երիտասարդությանը և պակասեցնելու նրանց միգրացիան դեպի խոշոր քաղաքներ: Դրանք զգալի չափով կրճատում են գյուղական բնակչության աշխատանքի սեզոնայնությունը, որը կապված է գյուղատնտեսական աշխատանքների բնույթի հետ:

Միևնույն ժամանակ գյուղատնտեսական աշխատանքների լարված ժամանակաշրջանում մասնաճյուղերը զգալի օգնություն են ցույց տալիս կոլտնտեսություններին և սովխոզներին: Այսպես, միայն 1979 թ. բերքահավաքի ընթացքում մեր ձեռնարկությունների կոլեկտիվները կոլտնտեսություններին և սովխոզներին օգնություն են ցույց տվել 202 հազար մարդ-օր չափով:

Արդյունաբերական ձեռնարկության մուտքը գյուղ բարերար ազդեցություն է գործում գյուղի թե՛ նյութական և թե կուլտուրական մակարդակի բարձրացման վրա: Ժողովրդական տնտեսության համար կարևոր է նաև այն, որ մասնաճյուղերը ստեղծվում են փոքր կապիտալ ներդրումներով, որը զգալիորեն



բարձրացնում է դրանց արդյունավետությունը: Այսպես, ընթացիկ տարվա պլանով մինիստրության ֆոնդահատույցը կկազմի 4 ռ. 45 կ., այդ թվում՝ արտադրամիավորումներում՝ 4 ռ. 89 կ., որում մասնաճյուղերի բաժինը կկազմի 6 ռ. 50 կ.:

Իհարկե, մասնաճյուղերի գործունեության մեջ առկա են նաև թերություններ: Ամենուրեք չէ, որ ստեղծված են աշխատանքային լավագույն պայմաններ, դեռևս ցածր է աշխատանքի արտադրողականությունը շատ մասնաճյուղերում և այլն: Սակայն այս բոլորը, այսպես ասած, աճի դժվարություններ են, որոնք կհաղթահարվեն ժամանակի ընթացքում: Մինիստրությունը մշակել է արտադրական մասնաշենքերի հատուկ նախագծեր ու ձեռնարկել է դրանց կառուցումը գյուղական վայրերում և փոքր քաղաքներում:

Չնայած մասնաճյուղերի հիմնման հետ կապված բազմաթիվ պրոբլեմների, համոզված ենք, որ մասնաճյուղերն արդարացնում են իրենց: Միայն անհրաժեշտ է դրանց գործունեությունը պլանավորել հանրապետության Պետպլանի ակտիվ մասնակցությամբ:

Այստեղ արծարծվեցին վերջնական լավագույն արդյունքին և արդյունավետությանը վերաբերվող բազմաթիվ հարցերից միայն մի քանիսը: Բնական է, որ թեթև արդյունաբերության ո՛չ տնտեսական գործունեությունը, և ոչ էլ հնարավորությունները չեն սահմանափակվում քննարկված ցուցանիշներով: Մինիստրության գործունեությանն են վերաբերում նաև ՀԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1979 թ.) պլենումում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի ցուցումներն այդ առթիվ. «Մեր կենսագործունեության բոլոր ոլորտներում, աշխատանքի բոլոր տեղամասերում էլ առկա են մեծ ռեզերվներ ու չիրացված հնարավորություններ, որոնց բացահայտումը և գործի դնելը մեծապես կնպաստի հանրապետության հետագա առաջընթացին»:

Մինիստրության և նրա ձեռնարկությունների տնտեսական ու տեխնիկական ղեկավարները, կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ, արտադրության առաջավորների ու նորարարների ակտիվ մասնակցությամբ ամենօրյա աշխատանք են կատարում այդ ռեզերվները հայտաբերելու և առավել արդյունավետ օգտագործելու համար: Մեծ է կոլեկտիվներում աշխատանքային բարձր ակտիվության մթնոլորտի ստեղծման ու պահպանման, գործարար սոցիալիստական մրցության կազմակերպման դերը: Արտադրական կոլեկտիվներում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքների արգասիքն եղավ այն, որ ճյուղի 25000 առաջավորներ ժամկետից շուտ ավարտեցին հնգամյակը, իսկ նրանցից 1800-ը չորս տարում կատարեցին 6—10 տարվա անձնական պլանները: Տասնչորս միավորումներ և ֆաբրիկաներ ժամկետից շուտ կատարեցին հնգամյակի չորս տարիների առաջադրանքները, իսկ նրանցից յոթը՝ ժամկետից շուտ կատարեցին տասներորդ հնգամյակի իրենց պարտավորությունները և արժանացան Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի հոբելյանական լենինյան պատվոգրի:

Թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների վերջին տարիների նվաճումները վկայում են, որ ճյուղի աշխատողները արտադրական նորանոր հաջողություններով կավարտեն տասներորդ հնգամյակը, որը հուսալի հիմք կլինի գալիք՝ տասնմեկերորդ հնգամյակի առավել արդյունավետ աշխատանքի համար:

տասարդ վարպետ Մինաս Սիմոնյանն է: Նրանք լավ գիտեն, որ եթե իրենց աշխատանքը գերազանց որակի չլինի, գործիքի վերջնական մշակման ժամանակ անհնար կլինի ուղղել իրենց թույլ տված սխալը:

Նրանց մշակած գործիքները վերջնական տեսք են ստանում փրեզերող Իշխան Հակոբյանի հմուտ ձեռքերով: Այստեղ է գործիքն ստանում միկրոնային ճշգրտություն: Իշխանի թողարկած արտադրանքը միավորման տեխնիկական բաժինը չի հսկում: Նա աշխատում է անձնական դրոշմանիշով և տալիս է միայն գերազանց որակի արտադրանք: Դեռ ոչ մի անգամ Իշխանը չի չարաշահել ղեկավարության վստահությունը:

Որակի և արդյունավետության բարձրացման այս հնգամյակում միավորման ողջ կոլեկտիվի սեռուն նպատակն է բարձրացնել արտադրանքի որակը: Եվ, պետք է ասել, որ արդյունքը գոհացուցիչ է, պետական որականիշով թողարկվող արտադրանքն այժմ կազմում է 25 տոկոս: Գործիքաշինարարների առաջին արտադրանքը ժողովրդական տնտեսության նվաճումների համամիութենական ցուցահանդեսում արժանացավ բրոնզե մեդալի: Հետագայում՝ արծաթե, իսկ վերջին տարիներին նրանք նվաճում են միայն ոսկե մեդալ:

Առաջադիմությունն ակնբախ է: Եվ դա առավել նկատելի է դառնում, երբ ծանոթանում ենք այն պայմաններին, ուր արտադրվում է գործիքը: Հատուկ բարդ գործիքների տեղամասում, որտեղ աշխատում են Իշխան Հակոբյանն ու իր ընկերները, պետք է պահպանվի ջերմային հատուկ ռեժիմ: Ջերմաստիճանի մեծ տատանումները սովորական գործիքի վրա կարող են ազդել աննշան չափով, իսկ այստեղ ամենափոքր տատանումն իսկ խոտանի պատճառ կդառնա: Ահա թե ինչու այս տեղամասում շատ ուշադիր են ջերմաստիճանի փոփոխությունների նկատմամբ: Սա միայն արտադրամասում: Իսկ այնտե՞ղ, ուր պետք է բանեն այդ գործիքները: Պատվիրատուին նույնպես հանձնարարական է տրվում՝ ապահովել համապատասխան ջերմություն:

...Տարիներն անցել են և այժմ արդեն բանվորը վախով չի դրոշմում իր ստորագրությունը՝ ՉԳԳ-ն, գործիքի վրա: Հպարտության անխառն զգացումն է համակել վարպետացած բանվորին, հպարտություն ամենից առաջ միավորման անվան ու պատվի, հետևապես և իր պատվի համար: Գործիքագործների մեծ ընտանիքի յուրաքանչյուր անդամ լավ է գիտակցում իր կատարածի կարևորությունը և իրեն պատասխանատու է զգում աշխատանքային ընկերների, ղեկավարության առաջ: Ինչպե՞ս չհպարտանալ, երբ մեր Միության ամենատարբեր քաղաքներից ու արդյունաբերական ձեռնարկություններից միավորման ղեկավարության հասցեով ստացվում են միայն ու միայն շնորհակալական նամակներ, հեռագրեր... Ընթերցողին ներկայացնենք հարյուրավոր այդպիսի նամակներից ու հեռագրերից մեկը.

«Հարգելի բարեկամնե՛ր:

Երկար տարիներ է, ինչ Իշիմբայի մեքենաշինական գործարանը ձեր պատվիրատուն է: Այդ բոլոր տարիների ընթացքում դուք երբեք չեք խախտել մեր պատվերների ժամկետները: Ձեր կոլեկտիվի շնորհիվ մեր գործարանը հաջողությամբ է կատարում պետական առաջադրանքները և միշտ սոցիալիստական մրցության առաջավորների շարքում է: Ցանկանում ենք ձեզ քաջառողջություն և աշխատանքային նորանոր հաջողություններ՝ հանուն մեր հայրենիքի հետագա բարգավաճման»:

Հեշտությամբ չեն ձեռք բերվում այդ հաջողությունները: Գործիքաշինական արտադրամիավորումում կա նաև մի այլ դժվարություն. բազմազան են արտադրվող գործիքները:

— Մի անգամ,— պատմում է միավորման դիրեկտոր Էդուարդ Խաչիյանը,— փորձեցինք հաշվել, թե մեկ տարում քանի տեսակ գործիք է արտադրվում: Տեխնիկական բաժնի բանից ավելի աշխատողների ջանքերն ապարդյուն անցան: Արտադրության հստակ կազմակերպման համար միավորումում ստեղծեցինք հաշվողական կենտրոն, ուր տեղադրված են «Նաիրի—2» և «ԷՍ—1022» մակնիշների հաշվիչ մեքենաներ:

Հեշտ չէ ամենատարբեր մեծության ու ձևի, ամենատարբեր նպատակների ծառայող 80 հազար գործիք պատրաստել, յուրաքանչյուրը մշակել չորս անգամ՝ չորս առանձին գծագրերով: Գործիքաշինականի բանվորի համար մտավոր ու ֆիզիկական աշխատանքներն անանջատ են: Տեխնիկական կրթությունն անհրաժեշտություն է: Այդ է պատճառը, որ շրջանային թերթում հրապարակված ընդունելության հայտարարության մեջ Չարենցավանի № 32 պրոֆտեխնիկական ուսումնարանը (նախկին № 6 պրոֆտեխուսումնարան) նշել էր՝ ուսումնարան կարող են ընդունվել միայն միջնակարգ կրթությամբ պատանիներն ու աղջիկները: Ընդունվողների նկատմամբ այդպիսի պահանջ ներկայացնում են բարձրագույն ուսումնական հաստատությունները: Եվ պատահական չէ, որ այդ ուսումնարանն ավարտած, միավորումում աշխատող բանվորներ Հակոբ Հակոբյանը, Մինաս Սիմոնյանը, Իշխան Հակոբյանը և նրանց աշխատանքային մյուս ընկերները՝ Իսրայել Բավեյանն ու Համլետ Բալյանը, Համիկ Բադալյանն ու Մերուժան Գուլյանը, Վահան Դավթյանն ու հանրապետության պետական մրցանակի դափնեկիր Սերգեյ Ավագովը և ուրիշներ իրենց գիտելիքներով ամենևին չեն զիջում շատ բարձրագույն կրթություն ունեցողների: Հապա աշխատանքային փորձը, ինքնակրթությունը և միավորումում գործող տեխնիկական ուսուցման պարապմունքները, որ այնքա՜ն շատ բան են տալիս իրենց գործը սիրող, պրպտող ու հետաքրքրվող այդ մարդկանց: Նրանք և նրանց աշխատանքային շատ ընկերներ հեշտությամբ են կարդում գծագրերն ու տեխնիկական փաստաթղթերը, ավելին, ուղղում, լրացնում են դրանք: Սա արդեն ստեղծագործական աշխատանք է, որը տարեկան տասնյակ ու հարյուր հազարավոր ռուբլիների օգուտ է բերում միավորմանը: Հարցը, սակայն, նյութական օգուտը չէ միայն: Բարոյական գործոնն ավելի մեծ է: Նորն ստեղծելով, բանվորը ճանաչում է իր ուժի ու կարողության սահմանները, համակվում իր նկատմամբ վստահությամբ:

Արդյունաբերության զարգացման համար որոշիչ է գիտության նվաճումների ներդրման դերը: Չկա առաջընթաց առանց գիտության համագործակցության: Գիտության օգնությամբ բանվորը կարողանում է իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, վերացնել խոտանը, ստեղծել առավել կատարյալ գործիքներ:

Միավորումում գործիքների պատրաստման համար օգտագործվող պողպատը մետաղամշակման այլ ձեռնարկություններում օգտագործվող պողպատից թանկ է ավելի քան 50 անգամ: Պողպատի խստագույն խնայողության, խոտանը նվազագույնի հասցնելու պայմաններում միայն կարելի է այստեղ խոսել արդյունավետության բարձրացման մասին: Եվ ի պատիվ գործիքագործների, պետք է ասել, որ այս մարզում նրանց առաջընթացն ակներև է. սկզբում սեփական ուժերով, ապա մեքենաշինության հայկական գիտահետազոտական ինստիտուտի օգնությամբ նրանք զգալի հաջողությունների են հասել այդ ասպարեզում: Ինստիտուտի աշխատակից Հ. Կանդյանը մշակել է մոլիբդատացման գործիքի մակերևութային ամրացման նոր տեխնոլոգիա, որն ապահովում է մետաղահատ գործիքների երկարակեցությունն ու հուսալիությունը: Գոհացուցիչ է Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի պրոֆեսոր Ն. Մանուկյանի ղեկավարած խմբի փորձը— մետաղատաշեղի և թափոնների մշակումը նոր մեթոդով: Միավորումը գործնական սերտ կապեր է հաստատել նաև «Հայհաստոց» գիտաարտադրական միավորման հետ: Նրա օգնությամբ նոր հաստոցներ են ստեղծվում մետաղահատ գործիքների արտադրության համար:

Արտադրության կատարելագործմանը, նորի ու առաջավորի արմատավորմանը զուգընթաց Չարենցավանի գործիքաշինական արտադրամիավորումում զգալի գործ է արվում արտադրության ընդլայնման, նոր արտադրատեսակների յուրացման նպատակով: Այժմ կառուցվում է միավորման նոր մասնաշենքը, որը նախատեսված է շահագործման հանձնել 1981 թվականի վերջերին: Որպեսզի պատկերացում կազմենք դրա կարողության մասին, նշենք միայն, որ այստեղ տարեկան մշակվելու է 10 հազար տոննա արագահատ պողպատ՝ այժմյան մեկուկես հազար տոննայի փոխարեն: Միավորման ղեկավարությունը, կուսակցական կազմակերպությունը արտադրանքի ծավալի աճը դիտում են ո՛չ միայն որպես քանակական փոփոխություն, այլև՝ առավել կատարյալ գործիքների արտադրություն: Գլխավորը որակն է՝ տվյալ ձեռնարկության և ինժեներական մտքի, բանվորի վարպետության աստիճանի չափանիշը: Իսկ այդ չափանիշը բարձր է Չարենցավանի գործիքաշինական արտադրամիավորումում: Այդ են վկայում նրա արտադրանքի շատ տեսակների վրա կնքված որակի հնգանիստ նշանները, նվաճած բազում դրոշները՝ համամիութենական սոցիալիստական մրցությունում:

Այս ամենն արտադրության ոլորտն էր, ուր բանվորն իր հաստոցի հետ կոփում, կռում է կարծր պողպատը և ուղարկում ըստ պատկանելույն:

Բայց բանվորի համար «ինքն ու իր հաստոցը» լինելուց բացի կա մի այլ՝ հոգեկան պահանջմունքների բավարարման աշխարհ: Հոգեկան գործոնը կարևոր է ո՛չ միայն արտադրության, այլև կյանքի բոլոր բնագավառներում: Ահա, օրինակ, պատվո տախտակը, այդպիսին կա գրեթե բոլոր հիմնարկ-ձեռնարկություններում:

Պատվո տախտակին պիոներական ալ փողկապներով, անմեղ աչուկներով երեխաների լուսանկարներ են: Առաջավոր բանվոր-բանվորուհիների ուսման ու կրթության գերազանցիկ զավակների նկարներն են դրանք, որ իրենց ներկայությամբ ոգևորում, հպարտությամբ են համակում ծնողների սրտերը: Նույն զգացումով են տոգորվում և աշակերտները՝ իրենց առաջավոր ծնողների լուսանկարները դպրոցի պատվո տախտակին տեսնելիս:

Նայում ես մանկական այս լուսանկարներին ու հավատում, որ պայծառ է նրանց գալիքը, նրանք են այն ապագա ինժեներներն ու կոնստրուկտորները, նորարարներն ու ռացիոնալիզատորները, որոնց միտքն ու բանականությունն առաջ անցնելով կստեղծեն նոր գործիքներ, մեքենաներ, այս անգամ ոչ թե միկրոնի, այլ դրա տասներորդական, հարյուրերորդա-

կան մասի ճշգրտությամբ: Միավորումում զգալի գործ է արվում աշխատավորներին կուլտուրայի, արվեստի նորություններին հաղորդակցելու, նրանց հոգևոր ընդունակությունների դրսևորմանը նպաստելու նպատակով: Այստեղ գործում են թատերական, երգի ու պարի ինքնագործ խմբերը, կազմակերպվում են հանդիպումներ նշանավոր մարդկանց հետ, հեռավոր էքսկուրսիաներ, մարզական մրցումներ, արվեստի ու գրականության հարցերին նվիրված դասախոսություններ և այլն:

Չարենցավանի գործիքաշինական արտադրամիավորումն օգնում է նաև կոլեկտիվ ու պետական տնտեսություններին, հատկապես՝ Ալափարսի պետական տնտեսությանը: Միավորումում ստեղծված շեֆական շտաբն օգնում է պլանավորելու տնտեսությունում իրականացվող աշխատանքները, այն դարձնելու առավել շահավետ ու նպատակալաց: Այդ գործի անմիջական հսկողությունն ստանձնել են կուսակցական և կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունները: Արտադրամիավորման օգնությամբ այստեղ կառուցվում է կերի մշակման արտադրամաս: Սովխոզին է հատկացվել մեկ խառատային հաստոց և մեկ ավտոմեքենա: Մեծ ուշադրություն է նվիրվում նաև մեքենաների նորոգմանը, հատկապես բերքահավաքի ժամանակ: Այստեղ էլ օգնության են հասնում գործիքագործները: Միավորման կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունների ուժերով սովխոզի յայլաղներում, անասնապահների համար տեղադրվել են վագոն-տնակներ, իսկ կուլտուրական սպասարկման համար միշտ պատրաստ է երգիպարի ինքնագործ խումբը:

Այդ ամենի շնորհիվ ստեղծված ջերմ, անկաշկանդ մթնոլորտն օգնում է բանվորներին՝ աշխատելու առավել նվիրվածությամբ, ջանք չխնայել սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները կատարելու, ըստեղծագործական ողջ եռանդը կուսակցության ու կառավարության առաջադրանքների կատարմանը ծառայեցնելու համար:

* * *

Ասում են՝ Չարենցավան քաղաքի հիմնադրման առաջին ցիցը խփել է պոլիտեխնիկական ինստիտուտի՝ այն ժամանակ երիտասարդ շըրջանավարտ Գևորգ Էմինը: Առաջին հարվածից հետո, փայտյա ցիցը դեմ է առել քարի՝ փշըրվել: Ցցի տեղը փոխվել է, և այդտեղ էլ հիմնվել է նոր քաղաքը: Թերևս այդ էլ առիթ դարձավ, որ հետագայում արդեն ճանաչված բանաստեղծը գրի, թե Հայաստանում «անգրագետ քարեր չկան»: Ասել են նաև, որ Հայաստանն ունի իր քարե սիմֆոնիան: Քարաշատ Հայաստանի Չարենցավան քաղաքում իրենց պողպատյա սիմֆոնիան են հնչեցնում գործիքաշինական արտադրամիավորումում թողարկվող գործիքները, սիմֆոնիա, որի ձայնը հասնում է մեր հայրենիքի հեռավոր անկյունները, արձագանքում մեր երկրից դուրս շատ երկրներում:

---

# ԱՅԳԵԶԱՐԴԻ ԱՍՏՂԵՐԸ

Ն. Գ. ՍԱՀԱԿՅԱՆ

**ԱՐԱՐԱՏՅԱՆ ԴԱՇՏԻ** գեղատեսիլ անկյուններից մեկում՝ Կարմիր սարի ստորոտում, կանաչախիտ այգեստանների մեջ փռված է Արտաշատի շրջանի Այգեզարդ գյուղը՝ նախկին Դարղալուն:

Այսօր Փարիզյան կոմունայի անվան Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր կոլտնտեսությունը հանրապետության հզոր տընտեսություններից է և վաղուց հայտնի է դարձել նրա սահմաններից դուրս:

Նախկին Դարղալուն, ինչպես և Արարատյան դաշտի շատ այլ գյուղեր հիմնվել են Արևելյան Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելուց հետո՝ 152 տարի առաջ: Սկզբում գյուղն ունեցել է ընդամենը 27 տնտեսություն և 93 բնակիչ, այսօր ունի համապատասխանաբար՝ 650 տնտեսություն և 3000 բնակիչ:

Ինչպիսի՞ն էր նախկին Դարղալուն: Ինչպիսի՞ն է այսօրվա Այգեզարդը: Այս հարցերի պատասխաններն ստանալու համար թերթենք գյուղի վաթսունամյա տարեգրության էջերը...

## ՀԵՏԱԴԱՐՁ ՀԱՅԱՑՔ

Հայկական այդ փոքրիկ գյուղի մարդիկ ապրում էին ծայրաստիճան կարիքի ու թշվառության մեջ: Հյուղակների փոքրիկ լուսամուտներից հազիվհազ առկայծում էին պատերի խորշերում դրված ձեթի ճրագները: Թոնրատներում, քուրսիների կողքին, շարվում էին մարդիկ և խոսում իրենց ծանր հոգսերի մասին: Չկար դպրոց: Գյուղացիների 98 տոկոսն անգրագետ էր:

Երբ բացվում էր կարիքով լի օրվա առավոտը, աղքատ մարդիկ մեջք էին ծռում գյուղի մեծահարուստ՝ Մրոյենց Ռստոյի, Դիլոյի և նրանց նմանների հողամասերում: Օրն ի բուն քրտինք էին թափում, բայց իրենց ֆիզիկական ծանր աշխատանքի դիմաց ստանում էին կոպեկներ: Շատերն ստիպված թողնում ու հեռանում էին գյուղից, աշխատանք փնտրում Ղամարլուում: Այստեղ ընկնում էին կալվածատերեր Բաբախանովների ձեռքը: Նրանք էլ, ինչպես ասում են, տասը շերտ կաշի էին հանում գյուղացիների մեջքից: Այդ էր պատճառը, որ Բաբախանովի ազատամիտ որդիները՝ Սիսակ և Միսակ Բաբախանյանները, տեսնելով իրենց հոր անարդարությունները, հեռացան հայրական օջախից, գնացին Բաքու: Ապրելով ու աշխատելով ազատատենչ պրոլետարիատի միջավայրում, նրանք ևս համալրեցին հեղափոխական մարտիկների շարքերը: Սիսակ Բաբախանյանը հետագայում ղեկավարեց կուսակցության Ղրիմի ընդհատակյա մարզկոմը, ապա մինչև իր կյանքի վերջը՝ 1937 թվականը, վարեց կուսակցական մի շարք ղեկավար պոստեր:

Վաթսուն տարի առաջ մեծ Հոկտեմբերի ազատաբեր արշալույսը ճառագեց նաև հայոց հինավուրց լեռնաշխարհում: Հայ աշխատավորը լիաթոք շունչ քաշեց: Հանրապետության մեծ երթի հետ արմատական տեղաշարժեր կատարվեցին նաև Այգեզարդ գյուղում: 1929 թվականն: Այստեղ ևս հիմնվեց կոլեկտիվ տընտեսություն, որի մեջ մտան սկզբում հինգ մարդ՝ բատրակներ Ղուկաս Գրիգորյանը, Սայեն Խաչատրյանը, Գրիգոր Սայադյանը, Գեղամ Կարապետյանը և Արմենակ Շահբազյանը: Հետո այդ թիվն աստիճանաբար աճեց: Այդ ժամանակ տնտեսությունն ուներ ընդամենը երկու սայլ, երկու զույգ եզ, 6—7 արոր: Այգիներն ու ցանքադաշտերը հազիվ հասնում էին մի քանի տասնյակ հեկտարի: Առաջին հինգ տարիներին հեկտարից ստացվում էր ընդամենը 50—55 ցենտներ խաղող, 6-ական ցենտներից ոչ ավելի բամբակ ու հացահատիկ: Շատ ցածր էր անասնապահության մթերատվությունը:

Հետագա տարիներին կոլտնտեսությունը նեքիայթային թռիչք գործեց, երբ նրա շարքերն անցան բոլոր մենատնտես գյուղացիները, և ժամանակակից առաջնակարգ տեխնիկան մուտք գործեց գյուղ: Արդեն 1940-ին հեկտա-

րից ստացվում էր 100 ցենտներ խաղող, 30 ցենտներ բամբակ, 20—25 ցենտներ հացահատիկ: Աստիճանաբար զարգանում էր և անասնապահությունը:

Հայաստանում սովետական իշխանության հաստատման 20-ամյակի տոնակատարության օրերին հրապարակվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը՝ կոլտնտեսությունը Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով պարգևատրելու վերաբերյալ: Մեր հանրապետությունում Այգեզարդն առաջինն արժանացավ կառավարական այդպիսի բարձր պարգևի: Իսկ համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի դիրեկցիան տնտեսությանը պարգևատրեց մարդատար ավտոմեքենայով:

— Կրեմլում անձամբ Միխայիլ Իվանովիչ Կալինինը,— վերհիշում է կոլտնտեսական Ղուկաս Գրիգորյանը,— հանդիսավոր կերպով վարչության այն ժամանակվա նախագահ Ավետ Ավետյանին, կոլտնտեսական Մկրտիչ Բադալյանին և ինձ հանձնեց շքանշանը, ամուր սեղմեց մեր ձեռքերը և կառավարական բարձր պարգևի առթիվ սրտանց շնորհավորեց մեզ, խնդրեց իր շնորհավորանքներն ու բարեմաղթությունները հաղորդել գյուղի բոլոր աշխատավորներին: Այդ օրը անմոռանալի, արժանահիշատակ է մեզ համար:

## ԱՄԵՆ ԻՆՉ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՀԱՄԱՐ

Հայրենական մեծ պատերազմի ահեղ օրերին այգեզարդցիները տքնում էին զոր ու գիշեր, կրկնապատկված, եռապատկված եռանդով: Կանայք, պատանիներն ու աղջիկները փոխարինել էին իրենց ամուսիններին, հայրերին և ավագ եղբայրներին: «Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար» լոզունգը Այգեզարդում ևս դարձել էր բոլորի նշանաբանը:

Չնայած աշխատող ձեռքի պակասին, կոլտնտեսությունում առաջվա պես աճեցվում էր խաղողի, բամբակի, պտղի, բանջարեղենի բարձր բերք, արտադրվում էին անասնապահական բավականաչափ մթերքներ: Տնտեսությունը դարձյալ քայլում էր առաջավորների շարքում:

Ռազմաճակատում մարտնչող իրենց համագյուղացիներին այգեզարդցիները գրում էին. «Զա՛րդ տվեք անարգ թշնամուն, հայրենի հողն ազատագրեցեք ֆաշիստական ճիվաղներից: Մենք կաշխատենք նաև ձե՛ր փոխարեն և կոլտնտեսությունը կանգուն կպահենք մինչև ձեր վերադարձը...»:

Այգեզարդցիները ռազմաճակատին տվեցին մեծ քանակությամբ պարենամթերք, տաք հագուստ, պաշտպանության ֆոնդ մուծեցին հարյուր հազարավոր ռուբլիներ:

Այգեզարդցիները տեսան պատերազմի արհավիրքը, ապրեցին հաղթանակի բերկրանքը: Ռազմաճակատ մեկնած 200 մարտիկներից 98-ը տուն չդարձան: Մեծ Հայրենականում սովետական ժողովրդի տարած հաղթանակի առթիվ նախատեսվում է գյուղի զբոսայգում կանգնեցնել պատերազմում զոհված այգեզարդցիների հիշատակը հավերժացնող հուշարձան-կոթող:

## ՀԵՐՈՍՆԵՐԻ ԳՅՈՒՂԸ

Կոլտնտեսությունն առաջընթացի նոր քայլեր արեց հետպատերազմյան տարիներին: Պատերազմից տուն դարձած այգեզարդցիները կրկին սկսեցին իրենց խաղաղ, ստեղծագործ աշխատանքը: Կարճ ժամանակամիջոցում զգալիորեն բարձրացավ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, ավելացավ անասնապահական մթերքների արտադրությունը: Կոլտնտեսության դրամական եկամուտները շուտով գերազանցեցին նախապատերազմյան մակարդակը: Կոլտնտեսականներն իրենց վաստակած աշխօրերի դիմաց ստացան ավելի շատ վարձատրություն և հնարավորություն ունեցան իրենց խնայողությունների հաշվին կառուցել մեկ-երկու հարկանի տուփակերտ, հարմարավետ առանձնատներ: Կոլտնտեսության անբաժանելի ֆոնդերի հատկացումների ավելացման շնորհիվ գյուղում սկսվեց կուլտուր-կենցաղային և հասարակական այլ շենքերի կառուցումը: Նոր հատակագծին համապատասխան՝ հիմնովին վերափոխվեց գյուղի դեմքը: Հետագա տարիներին շինարարական աշխատանքները գյուղում ավելի ծավալվեցին և շարունակվում են մինչև այսօր:

Այգեզարդցիների աշխատանքը բարձր գնահատվեց 1947 թվականին: Կոլտնտեսականների մի մեծ խումբ արժանացավ կառավարական պարգևների, իսկ օղակավարուհի Պայծառ Հովհաննիսյանին շնորհվեց սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում: Այգեզարդի առաջին ոսկե աստղը:

Երկու տարի անց՝ 1949-ի գարնանը, գյուղը կրկին ցնծության մեջ էր: ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով կոլտնտեսության հինգ առաջավորներ միանգամից արժանացան սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման: Այս անգամ ոսկե աստղակիրներ դարձան կոլտնտեսուհիներ Մարիամ Ասլանյանը, Սիսե Կարապետյանը, Փեփրոնե Գրիգորյանը, օղակավար Անդրանիկ Մուրադյանը և կոլտնտեսության վարչության նախագահ Հայկ Խաչատրյանը: Մեծ պատիվ գյուղի ու շրջանի համար: Կուսակցության ու կառավարության արժանի գնահատականը հոդի անխոնջ աշխատավորների մեծ ջանքերին:



«Հերոսների գյուղ»— շրջանում և հանրապետությունում այսպես սկսեցին կոչել Այգեզարդը:

Հետագա տարիներին Այգեզարդի հերոսների համաստեղությունը համալրեցին օղակավարուհի Ռոզա Ստեփանյանը և կոլտնտեսային արտադրության ճանաչված կազմակերպիչներից մեկը՝ վարչության նախագահ Հմայակ Սարգսյանը: Սոցիալիստական աշխատանքի ութ հերոս միայն մի գյուղից, ութ ոսկե աստղեր Այգեզարդում:

Բայց Այգեզարդի աստղերի թիվը չի սահմանափակվում միայն հերոսներով: Նրանք հիմա կենսաթոշակառուներ են և իրենց վաստակած հանգիստն են անցկացնում՝ խորհուրդներով ու կենսափորձով օգնելով երիտասարդ կոլտնտեսականներին: Կոլտնտեսությունում այժմ հաշվվում են Լենինի 18, Աշխատանքային կարմիր դրոշի 22 շքանշանակիրներ: Այլ շքանշաններով ու մեդալներով պարգևատրվել են շատ-շատերը:

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿՐՏՍԵՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐՆԵՐԸ

Կոլտնտեսությունն այսօր ունի շատ անվանի մարդիկ, բարձր բերքի բազում վարպետներ: Եվ նրանց շարքերը տարեցտարի խտանում են: Երեք տարի առաջ՝ 1977 թվականի նոյեմբերի 7-ին, մեծ Հոկտեմբերի 60-ամյակի օրը, բարձր պատվի արժանացավ բրիգադավար Պարույր Հովնաթանյանը. նրան շնորհվեց ՍՍՀՄ պետական մրցանակ: Նորից մի զարդ՝ Այգեզարդին: Նրա մասին գրեցին թերթերը, հաղորդվեց ռադիոյով ու հեռուստատեսությամբ: Պ. Հովնաթանյանի ղեկավարած բրիգադի կոլեկտիվը հեկտարից ստացել էր 208 ցենտներ խաղող, 1006 ցենտներ պոմիդոր: Անցած տարի բրիգադը նորից խաղողի ու բանջարեղենի բարձր բերք ապահովեց և յուրաքանչյուր հեկտարից ստացավ 297 ցենտներ պտուղ: Ռեկորդային բերք:

Երբ զրուցում էի պետական մրցանակի դափնեկրի հետ, նա վերհիշեց իր անցած ուղին, որը հարթ ու հանգիստ չի եղել: 1937-ին ավարտել է Ղամարլուի մանկավարժական ուսումնարանը, աշխատել է որպես ուսուցիչ: 1940-ին զորակոչվել է սովետական բանակ, պատերազմը դիմավորել ուկրաինական հողում: Մասնակցել է Սմոլենսկի հերոսական պաշտպանությանը, իսկ հետո... հետո բռնել նահանջի հոգեմաշ ճամփան մինչև Կուրսկ: Երկու անգամ վիրավորվել ու շարք է վերադարձել:

1942 թվականի մայիսին էր: Գրոհից առաջ նա դիմեց վաշտի կուսկազմակերպությանը. «Խնդրում եմ ինձ համարել կուսակցության անդամ, եթե հանկարծ ետ չվերադառնամ»: Երրորդ անգամ կոմունիստ Պ. Հովնաթանյանը վիրավորվեց Ռոստովի մոտակայքում: Ապաքինվելուց հետո նորից շարք վերադարձավ: Որպես վաշտի քաղղեկ, նա զինվորներին դաստիարակում էր սովետական ջերմ հայրենասիրության ոգով և նրանց մեջ խոր ատելություն սերմանում թշնամու հանդեպ: 1942 թվականի օգոստոսին Պ. Հովնաթանյանը չորրորդ անգամ վիրավորվեց...

...Մեծ հաղթանակից հետո տուն դարձավ, մինչև 1949 թվականը ուսուցչություն արեց գյուղի դպրոցում, ապա բռնեց դաշտի ճամփան: 1956-ին նշանակեցին բրիգադավար, և արդեն քառորդ դար այդ գործին է:

Կոլտնտեսության հիմնադրման առաջին տարիներին վարչության նախագահներից էր Կարապետ Աբրահամյանը: Եռանդուն կոմունիստ էր, հմուտ կազմակերպիչ: Նրա ղեկավարությամբ կոլտնտեսությունը նոր էր սկսել ոտքի կանգնել և իր առաջընթացի առաջին քայլերն էր անում, երբ 1933-ի սեպտեմբերյան մի օր դառնում է կույր պատահականության զոհ... Հողին են հանձնում հանդիսավորությամբ, գյուղի կենտրոնում՝ դպրոցի բակում: Այն ժամանակ որդին՝ Մյասնիկը, ընդամենը վեց տարեկան էր և հազիվ է հիշում հորը: Այսօր նա դարձել է հոր արժանավոր փոխարինողը: Ավարտելով միջնակարգը, անդամագրվեց հողագործների կոլեկտիվին: Եվ ահա 34 տարի շարունակ ղեկավարում է դաշտավարական բրիգադներից մեկը: Ընդամենը քսան տարեկան էր, երբ նրան վստահեցին արտադրության հրամանատարի այդ պոստը: Հետպատերազմյան դժվարին տարիներն էին: Կարճ ժամանակում Մյասնիկի ղեկավարած բրիգադը կոլտնտեսության առաջավորների շարքը դասվեց: Ամեն տարի ստանում է խաղողի ու բանջարեղենի բարձր բերք, հաղթող ճանաչվում սոցիալիստական մրցությունում: Անցած տարի, օրինակ՝ հեկտարից ստացավ 186 ցենտներ խաղող, 1200 ցենտներ պոմիդոր, 545 ցենտներ սոխ, 316 ցենտներ կարտոֆիլ:

Մյասնիկ Աբրահամյանը տնտեսության անվանի մարդկանցից է. Հոկտեմբերյան հեղափոխության և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններն են զարդարում նրա կուրծքը, արժանացել է բազմաթիվ այլ պարգևների: Քանիցս ընտրվել է կուսշրջկոմի անդամ, շրջանային և գյուղական սովետների դեպուտատ, սկզբնական կուսկազմակերպության քարտուղար: Այժմ ղեկավարում է կոլտնտեսության ժողովրդական վերահսկողության խումբը: Մյասնիկն ընտանիքի լավ հայր է. նրա չորս երեխաները՝ երկու տղաներն ու երկու դուստրերը, ստացել են բարձրագույն կրթություն և աշխատում են ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում:

Մ. Աբրահամյանը միակը չէ: Տնտեսությունում կան արտադրության շատ հմուտ կազմակերպիչներ, որոնք կարողանում են մոբիլիզացնել և իրենց ետևից տանել կոլեկտիվի անդամներին: Ծանոթանանք ևս մի քանիսին:

Երկարամյա բրիգադավար է Ժ. Սահակյանը: Նրա վաստակը ևս նշվել է կառավարական բարձր պարգևներով՝ Լենինի, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով, մի շարք մեդալներով: Ընտրվել է Հայկական ՍՍՀ յոթերորդ գումարման Գերագույն սովետի դեպուտատ: Անցած տարի նրա ղեկավարած բրիգադը կոլտնտեսությունում և շրջանում ստացավ բանջարեղենի ամենաբարձր բերքը՝ հեկտարից 837 ցենտներ:

Գյուղում և շրջանում բոլորը լավ են ճանաչում բարձր բերքի օղակավարուհի Իփիգենյա Պետրոսյանին: Նա այժմ կուսշրջկոմի բյուրոյի անդամ է, շրջանային սովետի դեպուտատ, եղել է Հայկական ՍՍՀ ութերորդ գումարման Գերագույն սովետի դեպուտատ: Աշխատասեր այս կինն իր օղակի անդամների հետ մեծ խնամքով է մշակում խաղողի այգին ու բանջարեղենի ցանքադաշտը և միշտ էլ բարձր բերք ապահովում: Անցած տարի, օրինակ, նրա օղակը հեկտարից ստացավ 185 ցենտներ խաղող, 500 ցենտներ բանջարեղեն: Այդ հաջողությանը օղակը հասավ Սվետլանա Ավագյանի, Սոնա Սարգսյանի, Լիդա Բաբայանի և մյուսների անձնվեր աշխատանքով: Այս տարի Իփիգենյան պարգևատրվեց Աշխատանքային փառքի երրորդ աստիճանի շքանշանով: Արժանի պարգև հողի վաստակաշատ աշխատավորուհուն:

Իփիգենյան շատ է կարդում գեղարվեստական գրականություն, օրվա թերթերն ու ամսագրերը: Նա ո՛չ միայն իր ղեկավարած օղակի, այլև իրենց բրիգադի ագիտատորն է, նրանց ամենօրյա խորհրդատուն:

Աշխատանքային կարմիր դրոշի և «Պատվո նշան» շքանշաններով է նշվել Նադյա Ղարիբյանի հայրենանվեր աշխատանքը: Ազգությամբ ռուս Նադյան քառորդ դար առաջ ամուսնու հետ գյուղ է եկել Իվանովոյի մարզից: Երկար ժամանակ չպահանջվեց, որպեսզի ծանոթանար խաղողի վազին, դրա մշակության ագրոտեխնիկային: Մի քանի տարի շարքային հողագործ էր, հետո նրան վստահեցին կոլտնտեսության № 3 բրիգադի օղակներից մեկի ղեկավարությունը: Վստահեցին և չսխալվեցին: Կարճ ժամանակամիջոցում նա դարձավ բարձր բերքի վարպետ, կոլտնտեսության անվանի մարդկանցից մեկը: Ամեն տարի հեկտարից 180—200 ցենտներ խաղող— ահա Նադյայի և նրա օղակի ջանքերի արգասիքը: Նրա աշխատանքի փորձի մասին շատ է գրվել մամուլում:

— Աշխատանքում զգում եմ կյանքի հմայքը, նրա իսկական իմաստը,— ասում է Նադյան:— Հիմա առանց խաղողի վազի, առանց ինձ հարազատ դարձած այս մարդկանց, թվում է, թե չեմ կարող ապրել:

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ՀԵՐԹԱՓՈԽ

Աշխատանքային հիանալի կենսագրություն է հյուսում կոլտնտեսության երիտասարդությունը: Այստեղ ավանդույթ են դարձել մասնագիտական կողմնորոշմանը նվիրված հավաքները: Ամեն տարի գարնան վերջին կամ ամռան սկզբներին կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպությունը և վարչությունը կազմակերպում են աշխատանքի վետերանների և դպրոցն ավարտած երիտասարդների հանդիպման երեկո: Նրանք նախ հավաքվում են կուլտուրայի տան ընթերցասրահում, լավ ձևավորված ստենդներից իրազեկ դառնում գյուղի տնտեսության նվաճումներին, ծանոթանում գյուղի հերոսների, անվանի մարդկանց հետ: Հետո մեծ դահլիճում աշխատանքի վետերանները սրտաբաց զրույց են ծավալում մասնագիտական կողմնորոշման շուրջ:

Ինչո՞վ զբաղվել դպրոցն ավարտելուց հետո: Սա շատ կենսական ու հրատապ հարց է: Մի շարք պատանիների համար ուղին պարզ է դառնում վաղօրոք. դեռ դպրոցում նրանք մեխանիզատորի մասնագիտություն են ձեռք բերում և անդամագրվում գյուղի մեխանիզատորների կոլեկտիվին: Ամեն տարի 30—40 շրջանավարտ մնում է կոլտնտեսությունում աշխատելու:

Այսօրվա մեխանիզատորները նախ գործնական պարապմունքներ են անցնում կոլտնտեսության հավաքակայանում: Իսկ ուսումնառության բազան հարուստ է. 50 տրակտոր, 18 բեռնատար ավտոմեքենա, երեք կոմբայն, գյուղատնտեսական բազմաթիվ մեքենաներ ու կցվող գործիքներ: Երեք տիպային ծածկերի տակ տեղավորված են ողջ տեխնիկան, բուժանյութերն ու պարարտանյութերը: Նախատեսվում է կառուցել ավելի խոշոր ու հարմարավետ հավաքակայան:

Մեխանիզատորների բրիգադի բրիգադավար Ռաշիդ Նահապետյանը և հավաքակայանի պետ Ռազմիկ Ավետիսյանը բարձրագույն կրթությամբ ինժեներ-մեխանիկներ են և լավ գիտեն իրենց գործը: Նրանց օգնությամբ ու ցուցումներով դպրոցական պատանիները սովորում են մեխանիզատորի մասնագիտությունը: Ահա նրանցից մեկը՝ Աշոտ Դանիելյանը: Երբ ավարտեց միջնակարգը, արդեն ծանոթ էր մեխանիզատորի մասնագիտությանը: Հայրենիքի հանդեպ իր զինվորական պարտքը կատարելուց հետո վերադարձավ հայրենի գյուղ, 1975-ից դարձավ կոլտնտեսության առաջավոր մեխանիզատորներից մեկը: Գարնանը և աշնանը հերկում, ամռանը՝ մշակում ու բուժում ցանքերն ու այգիները: Եվ պատահական չէ, որ այս տարի համագյուղացիները մեծ վստահություն հանդես բերեցին նրա նկատմամբ. ընտրեցին Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ:

Առանց արտադրությունից կտրվելու Աշոտը հեռակա կարգով սովորում է Սևանի ինդուստրիալ-տեխնոլոգիական տեխնիկումի ավտոտեխսպասարկման և նորոգման բաժնում, խորանում իր մասնագիտության մեջ: Իրեն ամրացված տրակտորներն ու մեքենաները խնամում է մեծ հոգատարությամբ, աշխատեցնում անխափան, տնտեսում մեծ քանակությամբ վառելանյութ: Աշոտի և նրա մեխանիզատոր գործընկերների ջանքերով տարեցտարի բարձրանում է այգիների ու ցանքերի մշակության մեքենայացման մակարդակը: Հիմա այգեթաղն ու այգեբացը, բուժումը, արքատի հավաքումը, ծերատումը, միջվազային-միջշարային վարը կատարվում են մեքենայով: Մեքենայացվել է ձեռքի աշխատանքի 80 տոկոսը:

Դառնալ հողի իսկական տերերը, նրանից ստանալ առավելագույնը. այս են սովորեցնում աշխատանքի վետերան վարպետ-դաստիարակները կոլտնտեսության արտադրության մեջ նոր ոտք դրած շրջանավարտներին, որոնք համալրում են իրենց ղեկավարած բրիգադների կոլեկտիվները: Հիմա միայն Պարույր Հովնաթանյանի ղեկավարած բրիգադում 30-ից ավելի երիտասարդ կա: Նրանցից յուրաքանչյուրի հետ բրիգադավարն անհատական զրույց է ունեցել, պարզել նրանց նախասիրությունները և ունակությունները: Առանց դրա դժվար է գտնել երիտասարդ մարդու սիրտը տանող ճանապարհը, նրան ոգեկոչել հարվածային աշխատանքի:

Իրողություն է: Եթե որևէ մեկը Այգեզարդում խախտել է կարգ ու կանոնը, նրան մի քանի օրով զրկում են դաշտում աշխատելու իրավունքից: Հովնաթանյանի ղեկավարած բրիգադում այդպիսի դեպք դեռ չի եղել. այստեղ բոլորն էլ կարգապահ ու առաջավոր են: Երիտասարդ հողագործներ Անիկ Վարդանյանն ու Ռաֆիկ Այվազյանը վերջերս ընդունվել են կուսակցության շարքերը: Դա նրանց վաստակի գնահատումն էր:

Դեռ պատանի հասակից Պ. Հովնաթանյանի ղեկավարած բրիգադում է Տիրայր Ավագյանը: Նրա անձնվեր աշխատանքը աննկատ չմնաց. նշանակեցին բարձր բերքի երիտասարդական օղակի օղակավար: Հետո արժանացրին մեծ պատվի. Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի իններորդ գումարման ընտրությունների ժամանակ ընտրեցին դեպուտատ: Անցած տարի նրա ղեկավարած օղակը հեկտարից ստացավ 180 ցենտներ խաղող՝ պլանով նախատեսված 160-ի փոխարեն: Դա, իհարկե, քիչ չէ, բայց և սահման էլ չէ: Օղակի մարդիկ այս տարի ձգտում են արժանավայել գործերով դիմավորել հայ ժողովրդի ազգային տոնը:

Առաջավորները շատ են: Ալվարդ Ավետիսյանը, Վարդուհի Խեչումյանը, Գրետա Խուդոյանը, Վարդան Մուրադյանը, Գրիշա Խուդոյանը կատարել են անձնական հնգամյա պլանը:

Եվ այսպես, Այգեզարդ գյուղի կոլտնտեսությունում աճում է բարձր բերքի վարպետների մի հիանալի, երիտասարդ հերթափոխ:

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ ՔԱՅԼՈՒՄ ԵՆ ՀԱՄԱՏԵՂ

Այգեզարդն այսօր հանրապետության բարեկարգ գյուղերից է: Այստեղ այցելողին թվում է, թե ինքը գտնվում է քաղաքատիպ ավանում. ասֆալտապատ փողոցներ, երկաթյա սյուներից շողացող լյումինեսցենտային լամպեր, կուլտուրայի տուն՝ լուսավոր ու ընդարձակ դահլիճով, գրադարան-ընթերցարանով, խաղասենյակներով, կոլտնտեսության պատմությանը նվիրված թանգարան, հասարակական այլ շենքեր:

Գյուղի կենտրոնում հառնել է վարդագույն տուֆից կառուցված 820 աշակերտ-տեղով միջնակարգ դպրոցի եռահարկ շենքը: Դպրոցը կրում է հայագիտության մեծ երախտավոր, համագյուղացի ակադեմիկոս Արարատ Ղարիբյանի անունը: Կուլտուրայի տան դիմաց հանգստի ու կուլտուրայի զբոսայգին է՝ ակացիաներով ու երկնասլաց բարդիներով շրջապատված:

Վերջին տարիներին այստեղ կառուցվել են բուժարանի, ծննդատան, դեղատան, հյուրանոցի, ճաշարանի, բաղնիքի, հանրախանութի, գրախանութի, վարսավիրանոցի նոր շենքեր: Անցած տարի նորակառույց տեղափոխվեց նաև գյուղական սովետի գործկոմը: Գյուղն ունի իր մսուր-մանկապարտեզը, ստացիոնար կինոկետը, հեռախոսակայանն ու փոստը: Գինեգործարանը հիմնականում վերամշակում է Այգեզարդի կոլտնտեսության աճեցրած խաղողը: Ահա այն ամենը, ինչը բնորոշում է այսօրվա Այգեզարդի՝ ժամանակակից գյուղի կուլտուրական դեմքը:

Այգեզարդցիներն ապրում են ունևոր ու կուլտուրական կյանքով, օգտվում այն ամենից, ինչից քաղաքաբնակը: Մոտ 300 կոլտնտեսականներ ունեն անհատական օգտագործման մարդատար ավտոմեքենա:

Այգեզարդ այցելած ժամանակ Հովհաննես Շիրազն ասել է. «Այստեղ արտադրությունը և

կուլտուրան քայլում են համատեղ...»: Միանգամայն իրավացի է բանաստեղծը: Այգեձորցիները հպարտությամբ են ցուցադրում գյուղատնտեսական արտադրության և հոգևոր կյանքի տարբեր բնագավառներում ձեռք բերած իրենց նվաճումները: Ուշագրավ է «Մեր գիտնականները» ստենդը: Այստեղ փակցված են ճանաչված այգեձորցի-գիտնականների լուսանկարները: Նրանք հաճախ գյուղ են այցելում, զրույցներով ու զեկուցումներով հանդես գալիս հայրենակիցների առջև:

Արդեն մեկ տասնամյակից ավելի է, ինչ գործում է գյուղի պատմության թանգարանը: Այցելուների ուշադրությունն են գրավում տնային օգտագործման այն իրերն ու առարկաները, որոնք արդեն պատմություն են դարձել: Ուշագրավ է ջրի թորման «մեքենան», որը սովորական սև տուֆից տաշված փոսիկով քար է՝ դրված չորսոտանի փայտյա հենարանի վրա: Առվից վերցված պղտոր ջուրը լցվել է դրա մեջ, զտվել կաթիլ առ կաթիլ, հետո օգտագործվել: Ահա և մարգոսը, արորի խոփը, փայտաշեն օրորոցը և այլն:

ՍՍՀՄ-ի կազմավորման 50-ամյակի օրերին գյուղ այցելած պատվիրակության մեջ եղել է ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար Գ. Վ. Ռոմանովը: Նա թանգարանին է նվիրել պողպատյա ձողից պատրաստված նիկելապատ մի հանգույց, որը խորհրդանշում է ժողովուրդների բարեկամությունը, և Լենինգրադ քաղաքը հիշեցնող հուշամեդալ:

Պատվավոր հյուրերի մատյանում թանգարանի բազմաթիվ այցելուները թողել են իրենց մակագրությունները: Դրանք բազմալեզու են. գրել են և՛ արտասահմանյան երկրների պատվիրակությունների ներկայացուցիչներն ու տուրիստները, և՛ մեր հայրենիքի եղբայրական հանրապետություններից գյուղ այցելած հյուրերը:

Արդեն երեքուկես տասնամյակ շնորհակալ գործ է անում կուլտուրայի տան դիրեկտոր Հակոբ Մանուկյանը: Նա է պատրաստում բոլոր ստենդները, գրում լոզունգներ, թանգարանի համար ձեռք բերում անհրաժեշտ ցուցանմուշներ: Պատերազմի վետերանի ջանքերը գնահատվել են ըստ արժանվույն:

Ահա թե ինչպիսին էր նախկին Դարղալուն և ինչպիսին է այսօրվա Այգեձորը: Վաթսուն տարվա ընթացքում հիմնովին վերափոխվել են գյուղը, մարդկանց ապրելակերպը: Գյուղը շարունակում է իր վերելքի ուղին: Այդ վերելքը գլխավորում է 60 կոմունիստներից բաղկացած կուսկազմակերպությունը: Տնտեսության մարդիկ խոստացել են այս տարի արտադրել ավելի շատ հողագործական ու անասնապահական մթերքներ, հաջողությամբ ավարտել տասներորդ հնգամյակը:

Կոլտնտեսության վարչության նախագահ Ռուբեն Մանուկյանը ոգևորված է խոսում հեռանկարների մասին:

— Այ, տեսնո՞ւմ եք Կարմիր սարի այն ստորոտը,— ձեռքով ցույց տալով ներկված հողակտորները, ասում է նա:— Արդեն երկրորդ տարին է, ինչ ձեռնամուխ ենք եղել այդ անմշակ հողերի յուրացմանը: Մոտ 100 հեկտար է. կհիմնենք խաղողի և պտղատու նոր այգիներ, կցանենք կերային կուլտուրաներ, դրանով իսկ է՛լ ավելի կհարստացնենք մեր հանրային տնտեսությունը: Այս գարնանն արդեն հիմնել ենք 40 հեկտար դեղձենու, ծիրանենու և տանձենու նոր այգիներ:

---



# ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ ԿՈԼԵԿՏԻՎՈՒՄ

**Մ. Մ. ՄԻՆԱՍՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ

*ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ձեռնարկության արտադրական կոլեկտիվի զարգացման ու ամրապնդման, նրա առջև դրված խնդիրների լուծման որոշիչ գործոններից է աշխատողների գիտակցական կարգապահության և փոխադարձ պատասխանատվության ապահովումը: Կարգապահությունն ու փոխադարձ պատասխանատվությունը կոլեկտիվ աշխատանքի իրականացման պարտադիր պայման են: Առանց այս լծակի լիարժեք իրացման ապարդյուն են աշխատանքի և արտադրության կազմակերպումն ու կառավարումը:*

*Կոլեկտիվը սոցիալ-տնտեսական մշտապես գործող կենդանի օրգանիզմ է, նրանում միավորված անհատներն ունեն իրավական ու բարոյական լիազորություններ ու պարտականություններ: Կոլեկտիվի առջև դրված խնդիրների լուծման վճռական օղակ է կառավարման մշտական բարելավման միջոցով աշխատողների, յուրաքանչյուր անհատի պատասխանատվության և կարգապահության ըստ ամենայնի բարձրացումը: Կոլեկտիվի անմիջական ազդեցությամբ անհատի մոտ ձևավորվում է սոցիալական պատասխանատվության զգացում, ամենօրյա աշխատանքային գործունեության հասարակական անհրաժեշտության ըմբռնում: Նման կողմնորոշման շնորհիվ անհատը կոլեկտիվի նկատմամբ իր պարտականությունների մեջ դրսևորում է առավել բարեխղճություն: Աշխատանքում բանվորի ցուցաբերած պատասխանատվությամբ և կարգապահությամբ է արժեքավորվում նրա բարոյական վարքագիծը:*

*Սոցիալիստական արտադրական կոլեկտիվում ընդհանուր կարգապահությունը և պատասխանատվությունը ո՛չ միայն հասարակական-բարոյական, այլև արտադրական պրոցեսի իրականացման պահանջ է: Տեխնիկական առաջընթացի ժամանակակից փուլում առանց դրա անհնարին է կոլեկտիվի արդյունավետ աշխատանքը, ներդաշնակությունը ձեռնարկության տարբեր օղակների միջև, արտադրապրոցեսի ապահովումը: Արտադրապրոցեսի բովանդակությունն իր հերթին, օբյեկտիվ հիմք է դառնում կառավարման միջոցով արտադրական և աշխատանքային կարգապահության պահպանման ու բարձրացման համար: Բարձր զարգացած տեխնիկայի պայմաններում կոլեկտիվի անդամների միջև հաստատվում են պատճառական, փոխպայմանավորվածության մշտական կապեր: Կոմպլեքսային մեքենայացված և ավտոմատացված արտադրությունը վերափոխում է մարդու վարքագիծը, նրան մղում կարգապահության, ճշտապահության, հասարակական սեփականության նկատմամբ ներարկում բարձր պատասխանատվության զգացում: Մարդու հոգեբանությունն ու վարքագիծը պետք է համապատասխանեն ինդուստրիալ զարգացման պահանջներին:*

*Կառավարման միջոցով կարգապահության և ընդհանուր պատասխանատվության բարձրացման համար անհրաժեշտ են սոցիալ-տնտեսական համա-*

րում հսկայական հնարավորություններ կան աշխատանքային ռեսուրսների օգտագործման, աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման, արտադրանքի թողարկման ավելացման, ինքնարժեքի իջեցման համար։

Աշխատաժամանակի կորուստը բերում է ո՛չ միայն տնտեսական, այլև հասարակական-բարոյական կորուստ, բացասաբար է անդրադառնում կոլեկտիվի հոգեբանական-բարոյական մթնոլորտի վրա։ Մարդը կորցնում է հարգանքը ամենաթանկագինի՝ ժամանակի նկատմամբ, մինչդեռ ժամանակի խնայողությունն է, որ վերջին հաշվով համարժեք է ամեն մի խնայողության։ Ռեալ իրողություն է նաև, որ որքան բանվորը քիչ ջանք ու եռանդ է ներդնում աշխատանքում, այնքան ավելի թույլ է կապվում արտադրական կոլեկտիվի հետ, ավելի աղքատ է դառնում նրա ներաշխարհը, ավելի քիչ պատասխանատվություն է զգում կոլեկտիվի աշխատանքի համար։

ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թ. նոյեմբերյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևը շեշտեց. «...կարգապահությունը և կարգ ու կանոնը միշտ հարկավոր են։ Իսկ հիմա, երբ վիթխարիորեն աճել են տնտեսավարման մասշտաբները, երբ տնտեսական փոխադարձ կապերի ցանցը դառնում է ավելի ու ավելի բարդ, խիտ ու ճյուղավորված, դրանք առանձնապես հարկավոր են։ Եվ ո՛չ միայն խոսքեր կարգապահության մասին։ Ոչ միայն կարգ ու կանոնի կոչեր, այլ ամենից առաջ՝ փութաջան, ամենօրյա կազմակերպչական աշխատանք, կատարման հստակ ստուգում, կադրային ճկուն ու կշռադատված քաղաքականություն»։

Ընթացիկ ժողովրդատնտեսական խնդիրների առնչությամբ կուսակցությունը կազմակերպական, մասսայական-քաղաքական, գաղափարախոսական աշխատանքի կարևոր բնագավառներից մեկն է համարում պայքարը աշխատանքային կարգապահական խախտումների, անբանության և թափթփվածության դեմ։ Այդ պայքարում աճող դեր պետք է խաղան աշխատավորական կոլեկտիվները։ Հարկավոր է ժողովրդական տնտեսության բոլոր տեղամասերում, յուրաքանչյուր արտադրական բջիջում ստեղծել բարձր պահանջկոտության, կազմակերպվածության, գործի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի իրադրություն։

Մեր շատ արտադրական կոլեկտիվներում մարդկանց, աշխատանքի և արտադրության սոցիալ-տնտեսական, հոգեբանական-բարոյական կոմպլեքսային հմուտ կառավարման շնորհիվ աշխատանքային կարգապահությունը դարձել է ներքին պահանջ։ Կա այն խոր համոզումը, որ կոլեկտիվների առջև դրված խնդիրների լուծումը ուղղակիորեն կապված է «աշխատանքի ժամանակ երկաթե կարգապահության հետ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 326)։ Կոլեկտիվների բազմաթիվ անդամներ աշխատանքը համարում են հասարակական նշանակության սոցիալ-բարոյական արժույթ, իսկ աշխատանքային պարտականությունները չկատարելը՝ ոտնձգություն հասարակական բարոյականության, կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական համախմբվածության դեմ։ Բարեխղճությամբ և բարձր պատասխանատվությամբ աշխատելը մեր կոլեկտիվներում սոցիալ-բարոյական նորմ է, սոցիալիստական ապրելակերպի սկզբունք։

---

# ՈՒՍԱՆՈՂ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՔՆՆԱՇՐՋԱՆԸ

**Լ. Ա. ԲԱՅՐԱՄՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ դաստիարակության համակարգում կարևոր՝ տեղ ունի աշխատանքային դաստիարակությունը, որը նոր մարդու ներդաշնակ զարգացման էական գործոններից է։ Սոցիալիստական հասարակարգում աշխատանքը ո՛չ միայն նյութական բարիքների ու հոգևոր կուլտուրայի աղբյուրն է, այլև երիտասարդ սերնդի դաստիարակության լավագույն միջոցը։ Կուսակցությունը երիտասարդության աշխատանքային դաստիարակությունը դիտում է որպես գաղափարաքաղաքական աշխատանքի հիմնաքարը։

Վ. Ի. Լենինը նկատել է, որ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակությունը պահանջում է հաստատել նոր կարգապահություն, մարդկանց միջև հասարակական կապի նոր ձևեր, աշխատանքում նրանց ներգրավելու նոր եղանակներ (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 30, էջ 662)։

Սոցիալիստական հասարակարգի կառուցման փորձը վկայում է երիտասարդության աշխատանքային դաստիարակության կենսական անհրաժեշտությունը։ Մեր երիտասարդությունը քաջ գիտակցում է, որ սոցիալիստական հասարակարգում աշխատանքը պատվի ու փառքի գործ է, անհատի սոցիալական գնահատման չափանիշ։ Մեզանում աշխատանքի առաջավորը մեծ հեղինակություն է վայելում։

Կուսակցությունը երիտասարդության կոմունիստական դաստիարակության ոլորտում գլխավորը համարում է աշխատանքային դաստիարակությունը, նպատակ ունենալով երիտասարդության մեջ արմատավորել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը, ստեղծարար գործունեության ձգտումը և այն գիտակցությունը, որ «Հասարակության բարօրության համար կատարվող աշխատանքը յուրաքանչյուր մարդու սրբազան պարտականությունն է։ Ինչպես ֆիզիկական, այնպես էլ մտավոր ամեն մի հանրօգուտ աշխատանք հարգելի ու պատվավոր է» (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 186)։ Երիտասարդությունը պետք է լավ իմանա, որ կյանքի իմաստը հանրօգուտ գործունեությունն է։ Երջանիկ է նա, «ով երջանկություն է բերել ամենից շատ մարդկանց» (К. Маркс и Ф. Энгельс. Из ранних произведений. М., 1956, стр. 5)։ Աշխատանքային դաստիարակությունը կարևոր դեր է խաղում աճող սերնդի բարոյաքաղաքական հայացքների ձևավորման գործում։ Դրանք օրգանապես կապված են միմյանց և գտնվում են դիալեկտիկական միասնության մեջ։

Կ. Մարքսը նշել է, որ աշխատանքը որքան միջոց է հանրային արտադրության, այնքան էլ միջոց է բազմակողմանի զարգացած մարդկանց պատրաստման համար (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 23, стр. 495)։ Զարգացնելով մարքսյան այս դրույթը, Վ. Ի. Լենինը շեշտել է մտավոր ու ֆիզիկական դաստիարակության զարգացման անհրաժեշտությունը, աշխատանքային դաստիարակության ու ուսուցման պրոցեսի օրգանական շաղկապումը, քանզի «չի կարելի պատկերացնել ապագա հասարակության իդեալը առանց ուսուցումը միացնելու երիտասարդ սերնդի արտադրողական աշխատանքի հետ, ո՛չ ուսուցումն ու կրթությունն առանց արտադրողական աշխատանքի, ո՛չ արտադրողական աշխատանքն առանց զուգահեռ ուսուցման ու կրթության չեն կարող դրվել այն բարձրության վրա, որ պահանջում են տեխնիկայի արդի մա-

կարգակը և գիտական իմացության վիճակը» (ԵԼԺ, հ. 2, էջ 606)։ Ուսուցումն ու աշխատանքային դաստիարակությունը պետք է պսակվի «Բազմակողմանի զարգացած ու բազմակողմանի պատրաստված մարդկանց» դաստիարակմամբ, «որոնք կարողանում են ամեն ինչ անել» (Երկեր, հ. 31, էջ 42)։ Լենինյան դրույթները չափազանց այժմեական են մանավանդ այսօր, գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում։

Սովետական երիտասարդությունն ակտիվորեն մասնակցում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը։ Լենինյան կոմերիտմիությունը, որն իրեն հայտարարել է տասներորդ հնգամյակի հարվածային ջոկատ, ստանձնել է 140 համամիութենական խոշոր կառույցների՝ այդ թվում ԲԱՄ-ի, ԿամԱԶ-ի, Արևմտյան Սիբիրի նավթի ու գազի հանքավայրերի, ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտու և այլ կառույցների շեֆությունը։ Միլիոնավոր երիտասարդներ իրենց աշխատանքային ավյունը նվիրաբերում են երկրի սոցիալ-տնտեսական պոտենցիալի հզորացմանը։

Սոցիալիզմը կատարելագործում է հասարակական հարաբերությունները, բարենպաստ պայմաններ ստեղծում մարդկանց, հատկապես երիտասարդության ունակությունների ու կարողությունների դրսևորման համար։ Սովետական երիտասարդությունը, յուրացնելով ավագ սերունդների աշխատանքային փառավոր ավանդույթներն ու հարուստ փորձը, շարունակում է զարգացնել ու հարստացնել այն, արագացնում գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն արտադրության մեջ ներդնելու պրոցեսը։ Կոմերիտական կազմակերպություններն ամենուրեք պայքարում են երիտասարդությանը կոմունիստական բարոյականության, կոմունիզմի գործին անսահման նվիրվածության ոգով դաստիարակելու, աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու, երիտասարդների հանրակրթական ու մասնագիտական մակարդակը բարձրացնելու համար։ Կոմերիտմիությունը երիտասարդության կոմունիստական դաստիարակության դպրոցն է։ «Կոմունիզմի համար պայքարը,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— ենթադրում է կուսակցության և կոմերիտմիության անդուլ ու սիստեմատիկ աշխատանքը հասարակության բոլոր անդամների, հատկապես երիտասարդների դաստիարակության ուղղությամբ» (Լենինյան կուրսով, հ. 1, էջ 529)։

Երիտասարդության աշխատանքային դաստիարակության գործում իրենց որոշակի խնդիրներն ունեն ուսումնական հաստատությունները, հասարակական կազմակերպությունները և ձեռնարկությունները։ Ուսումնական հաստատություններում դաստիարակչական աշխատանքները դրված են այնպես, որ ամեն մի սովորող-երիտասարդ «հստակորեն հասկանա աշխատավոր մարդու դերն ու վեհությունը, բանվոր դասակարգի պատմական միսիան, ձգտի կանգնել նրա փառապանծ շարքերում» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 654)։ Ուսումնական հաստատություններում երիտասարդության պոլիտեխնիկական ուսուցումը սերտորեն կապվում է արտադրության հետ, սովորողներին մասնակից դարձնելով արտադրական ու շինարարական կոլեկտիվների աշխատանքներին։

Հայտնի է Կոստրոմայի մարզի հանրակրթական դպրոցների շրջանավարտների գյուղում մնալու, գյուղատնտեսության մեջ աշխատանքի անցնելու նախաձեռնությունն ու կոչը, որը լայն արձագանք գտավ նաև մեր հանրապետության դպրոցականների շրջանում։ Նրանք նույնպես որոշեցին հասունության վկայականը ստանալուց հետո մնալ գյուղում, աշխատել արտադրության մեջ, իսկ կրթությունը շարունակել բուհերի երեկոյան ու հեռակա բաժիններում։ Գյուղատնտեսական աշխատանքների նկատմամբ նրանց ակտիվ հետաքրքրությունը և կողմնորոշումը ի հայտ են եկել դեռևս դպրոցական տարիներին աշակերտական բրիգադներում, գյուղատնտեսական արտադրության զանազան օղակներում աշխատելու ժամանակ։ 1974—1979 թթ. Հայկական ՍՍՀ դպրոցների բարձր դասարանների 25750 աշակերտներ մասնակցել են 141 հանգստի ու աշխատանքի ճամբարների, 187220 աշակերտ՝ 4431 արտադրական, 21520 աշակերտ էլ 804 վերանորոգման բրիգադների աշխատանքներին։ Նրանք և՛ հանգստացել են, և՛ զբաղվել հանրօգուտ գործով, որի արժեքը տարեցտարի դինամիկ կարգով աճել, 1,3-ից հասել է 9,3 մլն ռուբլու։ Վեց տարիների կատարած նրանց հանրօգուտ աշխատանքի ընդհանուր ծավալը կազմում է 23,49 մլն ռուբլի։



Հայտնի է նաև ուսանողական շինարարական ջոկատների մասսայական շարժումը, որը վկայում է նեղ ակադեմիական հարցերով չսահմանափակվելու, կոմունիզմի կառուցման ստեղծարար աշխատանքին ակտիվորեն մասնակցելու սովետական ուսանողների բարձր գիտակցականությունը։ Այդ մասին ՍՄԿԿ XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մենք բոլորս գիտենք, թե երիտասարդությունը ինչպես է ձգտում դեպի այդ ջոկատները։ Չէ՞ որ դրանք հսկայական գործ են անում։ Իններորդ հնգամյակում նրանք կատարեցին մոտավորապես 5 միլիարդ ռուբլու ծավալով աշխատանքներ։ Անհնար է գերագնահատել դրանց նշանակությունը նաև որպես աշխատանքային դաստիարակության դպրոցի» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 126—127)։ Ուսանողական շինջոկատներն իրենց գործունեության 20 տարում կապիտալ շինարարությունում իրացրել են մոտ 10 մլրդ ռուբլի։

Ուսանողական շինարարական ջոկատների շարժմանը բնորոշ են կամավորությունը, բարձր կարգապահությունը և պատասխանատվության զգացումը։ Այդ աշխատանքներին մասնակցելը նպաստում է երիտասարդի դաստիարակությանը, նրա բարոյական կերպարի ձևավորմանը, համոզմունքների, կամքի ու բնավորության մշակմանը և կազմակերպչական հակումների դրսևորմանը։ Դրա շնորհիվ շինջոկատները դարձել են ինչպես աշխատանքային, այնպես էլ կյանքի, հասարակական-քաղաքական պրակտիկայի, երիտասարդության կոփման ու հղկման դպրոցներ։ Ուսանողական շինջոկատների շարժումը հզոր հայրենասիրական շարժում է և խոշոր դեր է խաղում երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակության գործում։

Սովետական երիտասարդությունն ակտիվորեն մասնակցում է մեր երկրի հասարակական-քաղաքական կյանքի բոլոր ասպարեզների աշխատանքներին, ամենուրեք հանդես գալիս սեփական նախաձեռնությամբ, աշխատանքի նկատմամբ ցուցաբերում կոմունիստական վերաբերմունք։ «Միլիոնավոր պատանիներ ու աղջիկներ,— ասաց Լ. Ի. Բրեժնևը, ՀամԼԿԵՄ XVIII համագումարում,— ցույց են տալիս խիզախության, տոկունության, Հոկտեմբերի իդեալներին հավատարմության օրինակներ։ Նրանք մեծ խանդավառությամբ են աշխատում ամենուրեք, ուր առկա է կոմունիստական շինարարության ճակատը, ակտիվորեն պայքարում են երկրի զարգացման լարված պլանների կատարման համար։ Նրանք ամեն մի գործի մեջ մտցնում են իրենց հատուկ ռոմանտիկական ավյունը և, ես կասեի, երիտասարդական խոյանքը»։

Ուսանողական շինջոկատների շարժումը Հայաստանում ունի 15 տարվա պատմություն։ Այդ տարիներին հանրապետության երիտասարդությունն աչքի է ընկել աշխատանքային մեծ սխրագործություններով՝ ակտիվ մասնակցելով գյուղական դպրոցների, ակումբների, գրադարանների, մանկապարտեզների, բնակարանային և արդյունաբերական ձեռնարկությունների շինարարությանը։ Շինջոկատների շարժումը 15 տարիների ընթացքում առանձին էնտուզիաստների խմբերից դարձել է մասսայական հայրենասիրական շարժում։ Եթե 1965 թ. երկու ուսումնական հաստատությունների ուսանողներից կազմակերպվել է 200 հոգիանոց ջոկատ, որն աշխատել է Ղազախական ՍՍՀ-ում, ապա 1979 թվականին 76 ուսումնական հաստատություններից շինջոկատներ են մեկնել 12239 սովորողներ, որոնցից մեր հանրապետությունում աշխատել են 7924 հոգի, իսկ եղբայրական հանրապետություններում՝ 4315 հոգի։ Եթե 1965 թվականին մեր կոմերիտմիության պատվիրակները աշխատել են միայն Ղազախական ՍՍՀ-ում, ապա 1979 թվականին նրանք աշխատել են ինչպես Ղազախական, այնպես էլ Էստոնական ՍՍՀ-ներում, Կրասնոդարի երկրամասում, Մարիական ԻՍՍՀ-ում, Արխանգելսկի, Տյումենի, Բելգորոդի, Իրկուտսկի մարզերում, Գագարին քաղաքում և եղբայրական սոցիալիստական հանրապետություններից Լեհաստանում, ԳԴՀ-ում, ՀԺՀ-ում և ՉՍՍՀ-ում։

Այդ ժամանակաշրջանում ուսանողական շինջոկատների տարեկան կատարած աշխատանքի արժեքը 350 հազարից աճել է մինչև 46960 հազար ռուբլու։ 15 տարիների ընթացքում շինարարական ջոկատների աշխատանքներին մասնակցել են 90287 ուսանողներ, որոնք կատարել են 216470 հազար ռուբլու ծավալով աշխատանք և կառուցել, վերանորոգել, մոնտաժել ու շահագործման են հանձնել 1427 օբյեկտ։ Պետք է նկատի ունենալ, որ այդ աշխատանքային սխ-

բանքը նաև նշանակում է ուսանող երիտասարդության համար վիթխարի բարոյական լիցք, աշխատանքային ու կազմակերպչական հմտությունների ձեռքբերում, մասնագիտական գիտելիքների խորացում: Այդ հիանալի կենսափորձ է և կյանքի փայլուն ուղեգիր:

Ուսանողական շինջոկատները Հայաստանում, երկրի զանազան շրջաններում միայն 1979 թվականին պլանով նախատեսված 33,05 մլն ռուբլի ծավալով աշխատանքի դիմաց կատարել են շուրջ 47 մլն ռուբլու աշխատանք, այսինքն՝ 14 մլն ռուբլով ավելի կամ պլանը կատարել են 140,2 տոկոսով:

ՀԼԿԵՄ-ի շինջոկատները ձեռնամուխ են եղել 421 օբյեկտների կառուցմանը, որոնցից 129-ը՝ Հայաստանում: Դրանցից շահագործման են հանձնել 134 օբյեկտներ, հանրապետությունում՝ 33-ը: Շահագործման հանձնված օբյեկտներից 27-ին, այդ թվում Հայկական ՍՍՀ-ում 11-ին, տրվել է ՀամԼԿԵՄ Կենտկոմի ուսանողական շինջոկատների կառույցների որակի նշան: Այս ամենը վկայում է, որ ջոկատները դրսևորել են բարձր գիտակցականություն ու աշխատանքային կարգապահություն, որն իր հերթին քաղդաստիարակչական աշխատանքների պատշաճ մակարդակի արդյունք է:

Հայկական շինջոկատները կառուցել են 201 բնակելի շենք՝ 837055 քմ մակերեսով, 264 դպրոց՝ 289285 աշակերտների, 55 մանկապարտեզ ու մանկամսուր՝ 105670 մանուկների համար: Նրանք կառուցել են 15 մլն խմ տարողությամբ 2 ջրամբարտակ, 181 օբյեկտ՝ 184150 գլուխ անասունի, 130 թռչնաբուծարան՝ 725,1 հազար հավերի համար և այլն: ՀՍՍՀ-ում ուսանողական շինջոկատներն աշխատում են հանրապետության կոմերիտական հարվածային կառույցներում՝ Հրազդանի մեքենաշինական, Թալինի կերի գործարանների, Ջողազի ջրամբարի և շինարարական այլ օբյեկտների վրա: Նրանք մասնակցել և մասնակցում են Հայաստանի ատոմային էլեկտրակայանի, Արփա—Սևանի կառույցներին: Բացի այդ, աշխատանքային կիսամյակում պահածոների գործարաններում աշխատել են 4547 ուսանողներ, որոնք 1979 թվականի ընթացքում կատարել են 28 մլն ռուբլու արժողությամբ աշխատանք:

Ուսանողական շինջոկատների աշխատանքներն ընդգրկում են նաև բնակչության սպասարկման ոլորտը: 1979 թվականին 330 ուսանողներ աշխատել են Երևանի պտուղ-բանջարեղենի խանութներում և կատարել 5 մլն ռուբլու աշխատանք, 100 ուսանող էլ աշխատել են Անդրկովկասի երկաթուղու Երևանի բաժանմունքում որպես վագոնների ուղեկցորդներ: Նրանց ամառային երկու ամսվա ծառայության արժեքն անցնում է մեկ միլիոն ռուբլուց: Վերոհիշյալ տարիներին ջոկատներում աշխատել են 1839 ուսանող-բժիշկներ, որոնք օգնություն են ցույց տվել 34093 քաղաքացիների, առողջապահության վերաբերյալ բնակչության համար կազմակերպել 35494 դասախոսություններ և զրույցներ:

Վ. Ի. Լենինն ուսուցանել է՝ կոմունիզմի կառուցման հաջողությունը կապահովվի այնքանով, որքանով երիտասարդ սերունդը կդաստիարակվի «գիտակցական ու կարգապահական աշխատանքով... որ ամեն օր ուզած գյուղում, ուզած քաղաքում երիտասարդությունը գործնականորեն լուծի ընդհանուր աշխատանքի այս կամ այն, թեկուզ ամենափոքր, թեկուզ ամենահասարակ խնդիրը: Որքանով այդ տեղի կունենա յուրաքանչյուր գյուղում, որքանով կզարգանա կոմունիստական մրցությունը, որքանով երիտասարդությունը կապացուցի, որ ինքը կարող է միավորել իր աշխատանքը, այդքանով էլ ապահովված կլինի կոմունիստական շինարարության հաջողությունը» (Երկեր, հ. 31, էջ 365—366):

Ուսանողական շինջոկատների շարժումը ծանրակշիռ ներդրում է մեր հայրենիքի տնտեսական հզորության ամրապնդման գործում: Այն հզոր խթան է երիտասարդության աշխատանքային, քաղաքական, բարոյական կոփման համար, էապես նպաստում է նրա քաղաքական գիտակցականության բարձրացմանը, սոցիալական ակտիվության ուժեղացմանը, նախաձեռնության ու ստեղծագործական խանդավառության դրսևորմանը, հայրենասիրական ու ինտերնացիոնալ հայացքների ձևավորմանը:

Երիտասարդական կառույցներն ու խոշոր շինարարությունները, ԲԱՄ-ը, խամ ու խոպանի յուրացումը, ՏՓԽ-ի միացյալ ուժերով կառուցվող Ուստ-Իլիմսկի անտառարդյունաբերական կոմպլեքսը, գազամուղների, նավթամուղ-



ների, օլիմպիական կառույցների շինարարությունները, որտեղ համատեղ աշխատում են սովետական տարբեր ազգությունների պատկանող և սոցիալիստական երկրներից եկած ուսանողները, դարձել են ժողովուրդների անխախտ բարեկամության խորհրդանշան: Միայն 1979 թվականին Հայկական ՍՍՀ-ում ուսանողական շինջոկատների ինտերնացիոնալ բրիգադներում, փոխանակության կարգով, սոցիալիստական երկրների երիտասարդությունից աշխատել են 110 հոգի, իսկ Հայաստանի բուհերում սովորող արտասահմանյան ուսանողներից՝ 80 հոգի:

Համատեղ աշխատանքի հետ միասին նրանք կազմակերպում են զանազան միջոցառումներ, նշում ազգային տոները, հոբելյանական տարեթվերը, կազմակերպում համերգներ, սպորտային մրցույթներ և այլն, որոնք լուսաբանվում են երիտասարդական թերթերի էջերում, հաղորդվում ռադիոյով և ցուցադրվում հեռուստատեսությամբ: Այդ միջոցառումներն է՛լ ավելի են նպաստում երիտասարդության փոխըմբռնմանը, նրանց բարեկամության ամրապնդմանը:

Ուսանողական շինջոկատներում մասսայական բնույթ է ստացել աշխատանքային գործունեության զուգակցումը լայն քաղմասսայական, կուլտմասսայական, շեֆական աշխատանքների հետ: Հասարակական-քաղաքական աշխատանքները նրանք անցկացրել են ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները կենսագործելու, տասներորդ հնգամյակի պլանները կատարելու ու գերակատարելու նշանաբանով: Միայն 1979 թվականին ՀՍՍՀ-ի ուսանողական ջոկատների 483 անդամներ ՍՍՀՄ-ի ներքին ու արտաքին քաղաքականության մասին կարդացել են 1766 դասախոսություն: Նովոռոսիյսկ քաղաքում 408-րդ հայկական դիվիզիայի անվան շինջոկատը անցկացրել է սեմինար-կոնֆերանս՝ նվիրված Լ. Ի. Բրեժնևի Մալայա զեմլյա գրքի քննարկմանը, որի աշխատանքներին մասնակցել են Մալայա զեմլյայի անմիջական պաշտպաններ և Հայրենական պատերազմի վետերաններ: Մեր հանրապետության շինջոկատների մարտիկները կազմակերպել են 1284 համերգ, շեֆական կարգով վերանորոգել 63 գյուղական դպրոց, կառուցել 56 աշակերտական սպորտհրապարակ, կահավորել 55 մասնագիտական կաբինետ ու ֆոտոլաբորատորիա, ձևավորել 75 ակումբ ու գրադարան, դպրոցական գրադարաններին տվել 8164 գիրք, օգնության կարգով կոնսուլտացիաներ անցկացրել միջնակարգ դպրոցի 382 շրջանավարտների հետ, որոնցից 172-ն ընդունվել են բուհեր, աշխատել «Սպուտնիկ»-ի 49 ճամբարներում, որտեղ հանգստացել են 1542 պիոներներ ու դպրոցականներ, օգնել են պատերազմի ու աշխատանքային վետերանների և Հայրենական պատերազմում զոհվածների 267 ընտանիքի, ուսանողական շինջոկատների մեջ դաստիարակչական նպատակով ընդգրկել անուշադրության մատնված 43 աշակերտների: Հայ ուսանողների՝ «դժվար» դաստիարակվող երեխաների հետ կատարած աշխատանքը բարձր է գնահատել Ղազախական ՍՍՀ-ի Տուրգայի մարզի Ժակսինի շրջանի միլիցիայի բաժանմունքը:

Բազմաբովանդակ ու բազմաձև են ուսանողական շինջոկատների երրորդ աշխատանքային կիսամյակի կատարած աշխատանքները: 1979 թվականին, երեխաների միջազգային տարվա կապակցությամբ, «Թող լինի միշտ արևը» նշանաբանով, ուսանողական ջոկատների անդամները, շեֆական կարգով մեծ օգնություն են ցույց տվել ինչպես մեր հանրապետության, այնպես էլ եղբայրական հանրապետությունների մանկական հիմնարկություններին, դպրոցներին և պիոներական կազմակերպություններին: Արևելյան Ղազախստանի զոտու ջոկատները, հայ ուսանողների նախաձեռնությամբ, խաղալիքներ գնելու համար, մանկապարտեզներին փոխանցել են գումարներ, վերանորոգել են մանկապարտեզների շենքեր, կառուցել խաղահրապարակներ, երեխաների համար կազմակերպել «Ուրախ ստարտ», «Օպերացիա Նպատակ», «Ուրախ պատկերներ» հետաքրքրական միջոցառումները:

Բացի այդ, ուսանողական ջոկատների անդամները կազմակերպել են համերաշխության շաբաթ իմպերիալիզմի, գաղութակալության, ռասիզմի դեմ պայքարող ժողովուրդների հետ: Հայաստանի ուսանողական ջոկատները վաստակել ու Գագարին քաղաքի բարեկարգման և Վիետնամի հերոսական ժողովրդին օգնելու ֆոնդերն են փոխանցել 103 հազար ռուբլի:

1979 թվականի օգոստոսին ավարտվեց «Հայաստանի ուսանողական շին-

ջոկատների 15-ամյակի» անվան շինջոկատների երրորդ աշխատանքային կիսամյակը. ավարտվեց այն նորանոր հաջողություններով։ Այդ են վկայում ստացված հուշադրոշները, փոխանցիկ դրոշները, ՍՄԿԿ մարզկոմների, մարզային, երկրամասային, քաղաքային գործկոմների, կոմերիտական ղեկավար մարմինների պատվոգրերն ու գովասանագրերը, ՀՍՍՀ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը, ՀԼԿԵՄ Կենտկոմին, ՈՒՇՋ-ների հանրապետական շտաբին ու բուհերի ղեկավարությանը հասցեագրված շնորհակալական նամակները։

Ռուսաստանի ոչ-սևահողային գոտու աշխատանքներում նշանակալից ավանդի համար մեր հանրապետության շինջոկատներն արժանացել են ՌՍՖՍՀ-ի Մինիստրների խորհրդի պատվոգրին։ Բացի այդ, Սմոլենսկի մարզի Գագարին քաղաքի զարգացման համար կոմերիտական կազմակերպությունների շեֆության հետագա ծավալման հարցի քննարկման ժամանակ ՀամԼԿԵՄ Կենտկոմի քարտուղարությունը նշեց, որ քաղաքի զարգացման գործում հայկական ուսանողական շինջոկատներն ունեն «ծանրակշիռ ներդրում»։ Դրա համար նրանք արժանացել են Սմոլենսկի կոմերիտմիության մարզկոմի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի հուշադրոշներին, ինչպես և կուսակցության և կոմերիտմիության Գագարինի քաղկոմների շնորհակալագրերին։

Հարկ է նշել, որ ուսանողական ջոկատների համամիութենական սոցիալիստական մրցությունում հայկական ջոկատներն արժանացել են ՀամԼԿԵՄ Կենտկոմի և ՍՍՀՄ արդյունաբերական շինարարության մինիստրության մրցանակային երկրորդ տեղին և պարգևատրվել 1400 ռուբլով։

Հանրապետության ուսանողների աշխատանքային գործունեությունը պատշաճ գնահատականի է արժանացել Արևելյան Ղազախստանից ՀԼԿԵՄ Կենտկոմի և Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի ռեկտորի անունով ստացված ուղերձում, որում նշվում են ինստիտուտի ուսանողական «Սպարտակ» ջոկատի բրտնաջան ու ստեղծարար աշխատանքը, ուսանողների մեծ հմտությունը, վարպետությունը, գործի նկատմամբ ցուցաբերած բարձր պատասխանատվությունը։ Այնուհետև ասվում է, որ «Սպարտակը» սոցիալիստական մրցությունում շահել է առաջին տեղը, աշխատանքը գնահատված է գերազանց և խնդրում են, որ 1980 թվականին նրան նորից ուղարկեն իրենց մոտ։ Նամակն ավարտվում է մտերմական ջերմ խոսքերով. «Մենք կարող ենք միայն ասել՝ ցտեսություն, «Սպարտակ—79», կեցցե՛ «Սպարտակ—80»-ը»։

1979 թվականի աշխատանքային երրորդ քննաշրջանի մասնակիցների լավագույններից լավագույնները՝ 126 մարտիկներ, պարգևատրվել են ՀԼԿԵՄ Կենտկոմի, իսկ 27-ը՝ ՀամԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրերով։

1980 թ. շինջոկատներում արդեն ընդգրկվել են 12 հազար ուսանողներ, որոնք կաշխատեն այս տարի շահագործման հանձնվող էկիբաստուզի ՊՇԷԿ-ում, Մարիական Ինքնավար Հանրապետությունում, Նովգորոդի մարզի թռչնաբուծական խոշոր համալիրներում, Գագարին քաղաքի կառույցներում, Երևանի մետրոպոլիտենի, Հրազդանի որոշ ձեռնարկությունների, Մասիս—Նուռնուս երկաթուղու, Ախուրյանի ջրամբարի և թռչնաբուծական համալիրի կառույցներում։ Զգալի թվով ուսանողներ կաշխատեն պահածոների գործարաններում և ժողովրդին սպասարկելու ասպարեզում, նրանց մի մասն էլ՝ Տաթևի համալսարանի, Հաղարծինի, Գոշի, Մաստարայի և Շամիրամի պատմական հուշարձանների վերանորոգման ու վերականգնման վրա։ Մեր ուսանողական ջոկատները երրորդ աշխատանքային կիսամյակում կկատարեն մոտ 50 մլն ռուբլու աշխատանք, որից Հայաստանում՝ 3,8 մլն ռուբլու։

Ուսանող-երիտասարդության շինջոկատների հայրենասիրական հզոր շարժումը, նրա մարտիկների անձնվեր աշխատանքը, բարոյական վարքագիծը հանրապետության բուհերի կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների, պրոֆեսորադասախոսական կազմի ուսանող-երիտասարդության շրջանում կատարած կոմունիստական դաստիարակության աշխատանքի արդյունքն է, նրանց գործելակերպի ու ապրելակերպի համոզիչ բնութագիրը։

---



# ԿԱՊԻՏԱԼ ՆԵՐԴՐՈՒՄՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՆՆԵՐԸ

**Բ. Հ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների դոկտոր,
պրոֆեսոր

ՀԱՆՐԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ և դրա բաղկացուցիչ մասը կազմող կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման անհրաժեշտությունը և ուղիները բազմակողմանիորեն բացահայտվել ու գիտականորեն հիմնավորվել են ՍՄԿԿ XXIV և XXV համագումարներում, կուսակցության Կենտրոնական կոմիտեի մի շարք պլենումներում։ Իսկ 1979 թվականի հուլիսի 12-ին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» որոշումը, որը նշանավորում է տնտեսության պլանային ղեկավարման հետագա կատարելագործման մի նոր փուլ, ներկայացնում է կուսակցության XXV համագումարում ու Կենտկոմի հաջորդ պլենումներում այդ առթիվ առաջադրված խնդիրների իրագործման կոնկրետ միջոցառումների մի ամբողջական համակարգ։

Կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման պրոբլեմի ընդգրկման շրջանակը շատ լայն է, այն ներառում է հասարակության գործունեության գրեթե բոլոր ոլորտները։ Այստեղ կանդրադառնանք կապիտալ ներդրումներն իրականացնող հիմնական օղակում՝ կապիտալ շինարարությունում ներդրումների կենտրոնացման և պլանի հաշվեկշռվածության հարցերին։

Երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների կատարման ու սոցիալիստական էկոնոմիկայի հետագա առաջընթացի ապահովման համար վճռորոշ է կապիտալ շինարարության դերը։ Հանրապետությունում ընթացիկ հնգամյակի չորս տարիներին իրացվել են մոտ 4 մլրդ ռուբլու կապիտալ ներդրումներ, գործարկվել են 60-ից ավելի ձեռնարկություններ, խոշոր արտադրամասեր և այլ օբյեկտներ, շահագործման են հանձնվել 3,5 մլն քմ բնակելի տարածություն, 109 հազար տեղով հանրակրթական դպրոցներ, 29,4 հազար տեղով մանկական-նախադպրոցական հիմնարկություններ, 3270 մահճակալով հիվանդանոցներ, մեծ թվով կոմունալ և այլ շինություններ։ Կապիտալ շինարարության արդյունավետությունը պայմանավորում է երկրում գիտատեխնիկական առաջընթացի տեմպերը և հանրային արտադրության ու կապիտալ ներդրումների արդյունավետության մակարդակը, ուստի պատահական չէ, որ կապիտալ շինարարությունը միշտ էլ եղել է կուսակցության ու կառավարության ամենօրյա ուշադրության առարկա։ ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թվականի հոկտեմբերյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևը կապիտալ շինարարությունն անվանեց ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական պրոբլեմը և, նշելով թերությունները, կոչ արեց կարգ ու կանոն հաստատել մեր տնտեսական գործունեության այս կարևոր ոլորտում։ ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թվականի նոյեմբերյան

ժեքը ըստ նախահաշվի: Այդ ցուցանիշները հաստատվում են նաև պատվիրատուի պլանում, որով բարձրացվում է նրա պատասխանատվությունը գործարկման պլանը իրականացնելու համար:

Շինարարական կազմակերպությունների տնտեսական գործունեության գնահատումն այսուհետև պետք է կատարվի նշված երկու ցուցանիշների՝ կարողությունների գործարկման ու շինարարական արտադրանքի ծավալի և աշխատանքի արտադրողականության աճի ու շահույթի պլանների կատարման համաձայն:

Նախատեսվում է տասնմեկերորդ հնգամյակում աստիճանաբար անցնել շինմոնտաժային կազմակերպություններում աշխատանքի արտադրողականությունը ըստ նորմատիվային զուտ արդյունքի (կամ աշխատանքային ծախսումների փոփոխությունն ավելի ճիշտ գնահատող մի այլ ցուցանիշի) հաշվարկելու ու պլանավորելու կարգին, նույն ցուցանիշի հիման վրա պլանավորելով նաև աշխատավարձի ֆոնդը: Այսպիսի կարգն ավելի ճիշտ կարտացոլի տվյալ կազմակերպության ներդրումը ստացված արդյունքում՝ բացառելով այլ ձեռնարկությունների աշխատանքով ստեղծված արժեքները՝ շինարարական նյութերը, կոնստրուկցիաները, դետալները, մատուցած ծառայությունները և այլն, արհեստականորեն չավելացնելով տվյալ կազմակերպության կատարողականը կամ աշխատանքի արտադրողականության մակարդակը: Այս կարգը միաժամանակ կնվազեցնի առավել թանկարժեք աշխատանքների հաշվին պլանները կատարելու ձգտումը, որի հետևանքը լինում է օբյեկտների գործարկման ժամկետների խախտումը:

1981 թվականին ամբողջ երկրում կավարտվի պատվիրատուի և կապալառուի միջև հաշվարկներն ըստ գործարկված օբյեկտի կատարելու կարգի ներդրումը: Այդ կարգի համաձայն պատվիրատուն շինարարական կազմակերպությանը վճարում է ավարտված և շահագործման հանձնված, համապատասխան արդյունք տալու կամ ծառայություն մատուցելու նպատակով արդեն պատրաստ ձեռնարկության, համալիրի, հերթի կամ օբյեկտի համար՝ ըստ նախահաշվային արժեքի: Կվերացվի այն կարգը, երբ շինարարական կազմակերպությունը նախքան աշխատանք կատարելը ստանում էր կանխավճար: Այժմ արդեն իր արտադրանքն իրացնելու տեսանկյունից այն կնմանվի արդյունաբերական ձեռնարկությանը:

Պետք է ասել, որ նման պրակտիկա արդեն երկար տարիներ կիրառվում է Բելոռուսիայի, Լիտվայի, Լենինգրադի և այլ հանրապետությունների ու քաղաքների շինարարական կազմակերպություններում և լավ արդյունք է տալիս: Օրինակ, վերջին տարիներին Բելոռուսիայում այդ սկզբունքով շահագործման են հանձնվել 1600 ձեռնարկություններ, արտադրամասեր, բնակելի շենքեր, որոնց կառուցման ժամկետները, նախկինի համեմատությամբ, միջին հաշվով կրճատվել են 14 տոկոսով:

Հաշվարկման այս կարգին անցնելուց հետո շինարարական կազմակերպության ծախսումները մինչև օբյեկտի հանձնման պլանային ժամկետը կատարվելու են բանկի վարկի հաշվին ըստ նախահաշվային արժեքի: Գործարկման ժամկետն անցնելուց հետո վարկի օգտագործման համար գանձվող տոկոսներն ավելացվում են: Սակայն այս կարգը չի տալիս մի հարցի պատասխանը. ի՞նչ միջոցների հաշվին պետք է վճարվեն վարկի տոկոսները: Եթե այն ամբողջությամբ պետք է հաշվի առնվի կառուցվող օբյեկտների նախահաշվային արժեքում, ապա շինարարական կազմակերպությունների շահագրգռությունը օբյեկտները հնարավորին շուտ գործարկելու համար նկատելիորեն չի բարձրանա: Եթե այն պետք է մարվի շահույթի հաշվին, ապա նոր կարգին անցնող կազմակերպությունների ֆինանսական դրությունը կվատանա ու արդյունավետությունը կիջնի, քանի որ նրանց շրջանառու միջոցների միջին տարեկան ծավալը նույն կարողության պայմաններում զգալի չափով կաճի: Կարծում ենք՝ նպատակահարմար կլինի շինարարական կազմակերպությունների շահութաբերության նորմատիվը, մինչ հաշվարկի նոր կարգի կիրառումը, շրջանառու միջոցների ծավալին համեմատ որոշ չափով բարձրացնել:

Նպատակահարմար է համարվում որոշ ճյուղերում ձեռնարկությունները կառուցելիս շինբանկից վարկ ստանալ նախահաշվային արժեքի չափով և



ավարտված կառույցը հանձնել, ավելի ճիշտ կլինի ասել՝ վաճառել պատվիրատուին: Այս ասպարեզում երկրում կուտակված է որոշ փորձ՝ 27 գործարկված կարողություններից 19-ը հանձնվել են ժամանակին կամ նույնիսկ ավելի վաղ, 10 օբյեկտներից, նախահաշվային արժեքի համեմատությամբ, ստացվել է մոտ 1 մլն ռուբլու խնայողություն:

Արտադրական կարողությունների և օբյեկտների ժամանակին գործարկումը խթանելու նպատակով պարգևատրումների գումարը հասցվում է ժամանակին գործարկված կարողությունների համար կատարված շինարարական-մոնտաժային աշխատանքների նախահաշվային արժեքի միջին հաշվով մինչև 3 տոկոսի չափին: Բացի այդ, եթե օբյեկտը գործարկվում է հաստատված նորմատիվների համեմատությամբ ավելի կարճ ժամկետում, ապա գլխավոր կապալառուն պատվիրատուից կարող է ստանալ կրճատված ժամանակի ընթացքում նախագծով նախատեսված շահույթի 50 տոկոսի չափով միջոցներ, որոնք կավելացվեն շինարարությունն իրագործող կազմակերպությունների տնտեսական խթանման ֆոնդերին:

Ինչ խոսք, որ այս միջոցառումների կենսագործումը կշահագրգռի շինարարական կազմակերպություններին և կնպատակամղի նրանց սկսած կառույցները պլանով նախատեսված ժամկետներին և նույնիսկ ավելի վաղ ավարտելուն, շահագործման հանձնելուն, ինչպես նաև շինարարությունն էժանացնելու և արդյունավետությունը բարձրացնելու համար միջոցներ փնտրելուն:

Կապիտալ շինարարության արդյունավետության հետագա բարձրացումը պայմանավորող մի այլ լուրջ պրոբլեմ է շինարարության հաշվեկշռվածությունը: Սա իրար կապակցված և իրար լրացնող մի շարք կարևոր գործոնների կոմպլեքս է, որտեղ համաձայնեցված են տվյալ օբյեկտի կառուցմանը մասնակցող և դրա հետագա գործունեության հետ կապված բոլոր կազմակերպությունների ու ձեռնարկությունների աշխատանքի պլանավորումն ու իրականացումը:

Ամենից առաջ դա կապիտալ շինարարության հաշվեկշռվածությունն է, այսինքն՝ շինարարական կազմակերպության տարեկան պլանը կատարելու համար անհրաժեշտ արտադրական բազայի առկայությունը և համապատասխան նյութատեխնիկական մատակարարման, տեխնոլոգիական սարքավորումների նախագծային-նախահաշվային փաստաթղթերի ապահովվածությունը: Գաղտնիք չէ, որ կապիտալ շինարարությունում պլանները հաճախ սահմանվում են՝ հաշվի չառնելով շինարարական կազմակերպությունների ռեալ հնարավորությունները, ելնելով միայն պատվիրատուի պահանջարկից: Քիչ չեն դեպքերը, երբ պլանում նախատեսված աշխատանքներն անբավարար են ապահովվում համապատասխան նյութական ու աշխատանքային ռեսուրսներով, տեխնոլոգիական սարքավորումներով ու տեխնիկայով: Դեռ լիովին վերացված չէ այն վնասակար պրակտիկան, երբ շինարարներին պարտադրում են սկսել հաստատված նախագիծ ու նախահաշիվ չունեցող օբյեկտների շինարարությունը: ՍՍՀՄ շինարարության մինիստրության տվյալներով այդ մինիստրության համար շինմոնտաժային աշխատանքների պլանը այս հնգամյակի չորս տարիներից յուրաքանչյուրում հաստատվել է նախորդ տարվա համեմատությամբ 6,4-ից մինչև 13,5 տոկոս աճով, իսկ նյութատեխնիկական ռեսուրսները պլանավորվել են 1975 թվականի մակարդակով, սակայն այդ քանակությունը ևս լրիվ չի մատակարարվել շինարարներին, մատակարարվածն էլ հաճախ եղել է ցածրորակ, խախտվել են մատակարարման ժամկետներն ու տեսականին:

Հանրապետության շինարարական կազմակերպությունները ևս անբավարար են ապահովված տեղական շինանյութերով, շինափայտով, ցեմենտով, սև մետաղների գլանվածքով ու խողովակներով, պատուհանի ապակիով, փափուկ ծածկով և այլն: Օրինակ՝ շինափայտի ֆոնդերը 1977 թվականին իրացվել են 70 տոկոսի չափով:

Նյութատեխնիկական մատակարարման գործում խափանումները կարելի էր կրճատել՝ ներդնելով մատակարարման առաջավոր մեթոդներ, անցնելով մատակարարման տնտհաշվարկային համակարգի, սակայն արտադրատեխնիկական կոմպլեկտավորման տնտհաշվարկային վարչություններ առայժմ ստեղծված են ոչ բոլոր տրեստներում կամ դրանց ստեղծումը մասամբ ձևական բնույթ է կրում: Բարձր չէ մատակարարող կազմակերպությունների և տեխնո-

լոգիական սարքավորումներ արտադրող մեքենաշինական ձեռնարկությունների պատասխանատվությունը իրենց պայմանագրային պարտավորությունները ժամանակին և լրիվ կատարելու գործում։

Կապիտալ շինարարության անբավարար հաշվեկշռվածության, այն տեխնոլոգիական սարքավորումներով ու նախագծային-նախահաշվային փաստաթղթերով ժամանակին չապահովելու հարցում մեծ մեղք ունեն պատվիրատու կազմակերպությունները։ Վերջիններիս պատասխանատվությունը իրենց պարտավորությունների կատարման մեջ ցածր է նաև այն պատճառով, որ նրանք տուգանքներ կիրառելու հարցում շինարարների համեմատությամբ գտնվում են ավելի նպաստավոր պայմաններում։ Օրինակ, նախագծային և այլ անհրաժեշտ փաստաթղթեր ժամանակին չհանձնելու դեպքում ուշացած յուրաքանչյուր օրվա համար շինարարները կարող են ստանալ 250 ռուբլու հատուցում, իսկ պատվիրատուն շինարարության ձգձգման դեպքում կառուցող կազմակերպությունից կարող է իբրև տուգանք ստանալ նախահաշվային արժեքի 1,5 տոկոսի չափով գումար, իսկ մեկ ամսից ավելի ուշացնելու դեպքում՝ 2 տոկոս։

Կապիտալ ներդրումների արդյունավետությունը բարձրացնելու նպատակով կարևոր են նաև կառուցվող ձեռնարկության հետ միաժամանակ ինֆրաստրուկտուրայի օբյեկտների նախագծումը, շինարարությունն ու գործարկումը։ Դա վերաբերում է ինչպես արտադրական ինֆրաստրուկտուրային, այսինքն՝ տվյալ ձեռնարկության հետ առնչվող ճանապարհներին ու տրանսպորտային միջոցներին, ինժեներական կոմունիկացիաներին ու կառուցվածքներին, էլեկտրաջերմաէներգիայի ու ջրամատակարարման օբյեկտներին ու ցանցերին, սպասարկող ու օժանդակ ծառայություններին, այնպես և ոչ-արտադրական ինֆրաստրուկտուրային՝ բնակելի տներին, նախադպրոցական հիմնարկություններին, մշակույթի, առողջապահության, լուսավորության, առևտրի, կոմունալ տնտեսության ու կենցաղային սպասարկման օբյեկտներին։ Ինֆրաստրուկտուրայի օբյեկտների թեկուզև ժամանակավոր բացակայությունը կամ դրանց ոչ լրիվ կարողությամբ գործարկումը զգալի չափով կարող են նվազեցնել հիմնական ձեռնարկությունից սպասվող արդյունքը, համապատասխանաբար իջեցնելով դրա ստեղծման համար կատարված ներդրումների տնտեսական արդյունավետությունը։ Չնայած դրան, այդ օբյեկտների կառուցմանն ու ժամանակին գործարկմանը հաճախ անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում, ուժերը կենտրոնացվում են հիմնական ձեռնարկության վրա և վերջինս գործարկվում է ոչ կոմպլեկտ ձևով, և մինչև ինֆրաստրուկտուրայի օբյեկտների հանձնումը ստեղծված արտադրակարողությունները հաճախ լրիվ չեն օգտագործվում։

Նշենք հավասարակշռվածության ապահովման անհրաժեշտության մի պայման ևս։ Գործարկվելուց հետո ձեռնարկությունը, որպես կանոն, աշխատում է այլ ձեռնարկությունների հետ կոոպերացված, իբրև ամբողջական համակարգի բաղկացուցիչ մաս։ Հիմնական և դրա հետ հարակից մյուս ձեռնարկությունները, որոնք տվյալ ձեռնարկությանը հումք և նյութեր են մատակարարում կամ էլ օգտագործում են դրա ստեղծած արդյունքը, պետք է նախագծվեն ու կառուցվեն այնպես, որ շահագործվեն միաժամանակ։ Հակառակ դեպքում խախտվում է սոցիալիստական տնտեսության պլանային-համամասնական զարգացման հիմնարար օրենքը, ճյուղերի միջև առաջանում են անհամամասնություններ, իջնում է նոր ստեղծված կարողությունների օգտագործման աստիճանը, ձգձգվում դրանց յուրացման տևողությունը, ներդրված միջոցները սառեցվում են երկար ժամանակով, որով ժողովրդական տնտեսությանը պատճառվում է զգալի վնաս, չի ապահովվում կապիտալ ներդրումների նախագծված արդյունավետությունը։ Նույնպիսի հետևանք կարող է ունենալ նաև գործարկվող ձեռնարկությունը՝ պահանջվող որակի ու քանակի աշխատանքային ռեսուրսներով չապահովելիս։

Հարակից ճյուղերում կարողությունների չհամաձայնեցված պլանավորման օրինակներ բերեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թ. նոյեմբերյան պլենումում։ Նա նշեց, որ հսկայական ջանքերի գնով կառուցվել են պարարտանյութերի արտադրության խոշորագույն գործարաններ, որոնք լրիվ չեն օգտագործվում, քանի որ հումքի ու գազի մատակարարումը անբավարար է։ Ռուզաևկայի ու Պենզայի քիմիական մեքենաշինության գործարանների վերջին



տարիներս գործարկված կարողությունները 1979 թվականի առաջին կիսամյակում օգտագործվել են իրենց հզորության կեսով չափ միայն՝ կադրերով ապահովված չլինելու պատճառով։

Նման օրինակներ կարելի է գտնել և մեր հանրապետությունում։ Բոլորի հիշողության մեջ թարմ է Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանի և Իջևանի գորգագործական կոմբինատի գործարկումից հետո ծառացած պրոբլեմը, երբ դրանցից առաջինին քիմիական հումք մատակարարող հզորությունները դեռ ստեղծված չէին, իսկ երկրորդի արտադրական կարողությունները երկար տարիներ լրիվ չէին յուրացվում աշխատող կադրերի պակասի պատճառով։

Անբավարար չափով հաշվեկշռված կապիտալ շինարարության հետևանքով ժողովրդական տնտեսությանը պատճառվող վնասի համար պատասխանատվության լուրջ միջոցառումներ են նախատեսվում ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թվականի հուլիսի 12-ի որոշմամբ։ Սկսած տասնմեկերորդ հնգամյակից, կապիտալ շինարարության պլանները կարող են հաստատվել միայն այն դեպքում, եթե դրանք հավասարակշռված են նյութերի, տեխնոլոգիական ու էներգետիկական սարքավորման, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսներով, ինչպես նաև շինմոնտաժային կազմակերպությունների կարողություններով։ Հաստատվելու են նաև պլանային աշխատանքները կատարելու համար անհրաժեշտ նյութերի, մեքենաների, մեխանիզմների և այլ նյութատեխնիկական ռեսուրսների մատակարարման ծավալները։ Կարող են պլանավորվել միայն այն օբյեկտները, որոնք նախորդ տարվա հուլիսի 1-ի դրությամբ ունեն արդեն հաստատված նախագծային-նախահաշվային փաստաթղթեր, ինչպես նաև տվյալ տարվա շինարարության ծավալի համար աշխատանքային գծագրեր։

1981 թ. նախատեսվում է ավարտել կառույցների անցումը մատակարարման այն կարգին, երբ դրանց ապահովումը նյութերով իրագործում են նյութատեխնիկական ապահովման տերիտորիալ մարմինները՝ նախագծի ու նախահաշվի հիման վրա որոշված պահանջարկին համապատասխան։ Այսպիսի կարգը կօգնի մինիմումի հասցնելու մատակարարման խափանումները։

Տեխնոլոգիական սարքավորման ու այլ տեխնիկական միջոցների կոմպլեկտ ապահովման դեպքում պատվիրատուն գլխավոր մատակարարի հետ հաշվարկը կկատարի ստացված կամ մոնտաժված սարքավորման կոմպլեկտի համար ամբողջությամբ։ Մատակարարման կամ մոնտաժման պլանային ժամկետում ծախսումներ կատարելու համար գլխավոր մատակարարին տրվում է բանկային վարկ, որի դիմաց գանձվող տոկոսները նշված պլանային ժամկետն անցնելուց հետո ավելացվում են։ Այս կարգը, ինչ խոսք, զգալիորեն կբարձրացնի մեքենաշինական ձեռնարկությունների նյութական պատասխանատվությունը կառույցները ժամանակին ու կոմպլեկտ ձևով անհրաժեշտ սարքավորումով ապահովելու գործում։

Պլանավորման նոր համակարգը բացառում է պլանային առաջադրանքների սահմանումը ըստ համապատասխան ցուցանիշների փաստացի շարժի ու մեծության։ Արտադրական, այդ թվում նաև շինարարական կազմակերպությունների հնգամյա ու տարեկան պլանները հետայսու պետք է մշակվեն տնտեսագիտական ու ինժեներական հաշվարկների հիման վրա՝ հաշվեկշռելով առաջադրանքները և ունեցած հնարավորությունները։ Նպատակահարմար է հաշվարկել շինմոնտաժային կազմակերպությունների կարողությունները, որն այժմ ոչ միշտ է կատարվում և հաճախ պատճառ է դառնում չհիմնավորված՝ հնարավորություններից բարձր կամ ցածր առաջադրանքների հաստատման։ Այդօրինակ հաշվարկները որակյալ ձևով կատարելու համար հարկ կլինի է՛լ ավելի ուժեղացնել հանրապետության շինկազմակերպությունների տնտեսագիտական ծառայությունը, լայնորեն օգտագործել ժամանակակից մաթեմատիկական մեթոդները և էլեկտրոնային հաշվեմեքենաները։

# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ԷՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆԵՐԳՈՐԾՈՒՆՈՒԹՅՈՒՆԸ

**Ս. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

*ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ, հասարակական հարաբերությունների ու սոցիալական պրոցեսների ողջ համակարգի բարդացմանն ու խորացմանը զուգընթաց, առավել կարևոր է դառնում տնտեսության կոմպլեքսային ղեկավարումը:*

*Կառավարման բոլոր օղակներում անցումը ժողովրդատնտեսական պլանավորումից տնտեսական ու սոցիալական զարգացման պլանավորման՝ էկոնոմիկայի կառավարման և տնտեսավարման համակարգի արմատական բարելավման պրոբլեմի կոմպլեքսային լուծման արդյունավետ միջոցներից է: ՍՍՀՄ նոր սահմանադրությունը օրենսդրորեն ամրապնդեց սոցիալական պլանավորումը: Հիմնական օրենքի «Սոցիալական զարգացում և կուլտուրա» գլխում հստակորեն բնորոշված են սոցիալական զարգացման բովանդակությունը, սահմանագծված է հարցերի շրջանակը: Այստեղ առանձնանում են երկու խումբ: Առաջինը հասարակական հարաբերությունների և սոցիալական պրոցեսների կարգավորումն է, երկրորդը՝ բնակչության աշխատանքի և կենցաղի առկա պայմանների բարելավումը: Սահմանադրական բնորոշումները պարզորոշ ցույց են տալիս, թե սոցիալիստական հասարակարգը ինչ է տալիս մարդուն և այն, թե ինչ է տալիս մարդը հասարակությանը:*

*Սոցիալական պլանավորումը չի սահմանափակվում միայն բաշխման պրոցեսների կարգավորմամբ: Այն ընդգրկում է և արտադրությունը, միաժամանակ ապահովելով դրա զարգացումը սոցիալիզմին ներհատուկ մեթոդներով: Նախատեսելով արտադրության մեքենայացման, աշխատանքի ու հանգստի պայմանների բարելավման միջոցառումներ, սոցիալական պլանավորումն ակտիվորեն ազդում է կադրերի հոսունության կրճատման վրա, կանխում բնակչության չպատճառաբանված միգրացիան, ամրապնդում աշխատանքային կարգապահությունը, նպաստում աշխատուժի ռացիոնալ օգտագործմանը: Այդպիսի պրոբլեմների լուծմամբ անհրաժեշտ պայմաններ են ստեղծվում տնտեսական ցուցանիշների բարելավման համար, որն իր հերթին ավելացնում է մարդկանց նյութական ու հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարման ռեսուրսները: Օրինակ, Հայկական ՍՍՀ տեղական արդյունաբերության մինիստրության «Շուշան» արտադրամիավորման գլխավորող ձեռնարկությունը բրդյա կտորի հենքը նախկինում ստանում էր դրսից: Հենքը ժամանակին չստանալու պատճառով խախտվում էր արտադրության ռիթմիկ աշխատանքը, որն ազդում էր պլանների կատարման և արտադրանքի որակի վրա: Նոր տեխնոլոգիայի յուրացումը դժվարին էր, սակայն կոլեկտիվը չհուսահատվեց: Հարկ եղավ մասնագետներ հրավիրել: Մի քանի ամսվա համառ աշխատանքը տվեց ցանկալի արդյունք: Ներկայումս միավորման պատրաստած հենքը իր որակով չի զիջում երկրի առաջավոր ձեռնարկությունների արտադրանքին: Եր-*



*կար ժամանակ ուղեգործերի միջնաթելը փաթաթվում էր ձեռքով, որն աշխատատար էր և անարտադրողական: Ձեռնարկության առաջավոր բանվորները և ինժեներատեխնիկական աշխատողները նախաձեռնեցին մեքենայացնել այդ պրոցեսը: Կարճ ժամկետում ներդրվեցին միջնաթելի փաթաթման մեքենաներ, որոնք փոխարինեցին 25 բանվորների: Այս միջոցառումը հնարավորություն ընձեռեց ուղեգործերի արտադրամասում 25 տոկոսով բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և 15 հազար ռուբլով իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը:*

*Արտադրության արդյունավետության բարձրացման գործում մեծ նշանակություն ունի արտադրակարողությունների ճիշտ օգտագործումը: Մահճակալի ծածկոցների ու դեկորատիվ կտորի նոր տեխնոլոգիայի յուրացումն ու սերիական արտադրությունը պակասեցրին ոլորող արտադրամասի կարողությունը: Այս անհամամասնությունը վերացնելու համար որոշվեց ներդնել երրորդ ոլորող մեքենան և հավասարեցնել ոլորող ու մնացած արտադրամասերի կարողությունները: Դրա շնորհիվ արտադրության ծավալն աճեց 20 տոկոսով: Իսկ մահճակալի ծածկոցների և դեկորատիվ կտորի որակը բարձրացնելու նպատակով արտադրության մեջ ներդրվեց չեխոսլովակյան «Կովո» մակնիշի լայնացնող, չորացնող և արդուկող մեքենան:*

*Արտադրության արդյունավետության բարձրացմանը մեծապես նպաստում են ներտնտեսական մրցույթները: Օրինակ, անցյալ տարի երկու անգամ կազմակերպվել է մրցույթ ջուլհակուհիների միջև: Առաջնություն շահած ջուլհակուհիները խրախուսվել են, նրանց աշխատանքի փորձը ուսումնասիրվել է կոմունիստական աշխատանքի դպրոցներում: Ձեռնարկության նորարարների արժեքավոր առաջարկությունների շնորհիվ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, մեքենայացվել են ձեռքի շատ աշխատանքներ: Ռացիոնալիզատորներ Նշան Թադևսյանի և Սերյոժա Մանուկյանի առաջարկած սարքը մեքենայացրել է դեկորատիվ կտորի ծալման և փաթեթման պրոցեսները, և դրանով իսկ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը: Իսկ Միշա Բադալյանի առաջարկությամբ ժակկարդի հաստոցի վրա դրվել է մի հարմարանք, որը նվազեցրել է դրա աղմուկը:*

*Արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր գործոն է թափոնների օգտագործումը: «Շուշան» արտադրամիավորման ձեռնարկությունները լրիվ օգտագործում են ոչ միայն իրենց, այլև հանրապետության տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունների թափոնները, դրանցից պատրաստում են ներքնակներ, կիսաբրդյա թել՝ ուղեգործերի ու կարպետների արտադրության համար: Ընդլայնվել է թափոններից պատրաստվող արտադրանքի տեսականին՝ յուրացվել է կարպետի, նիտրոնի թելի, նախամանվածքի մեքենայական արտադրությունը, որից գոյացող թափոնների կրկնակի վերամշակումից ստացվում է վատին: Աշխատանքներ են տարվում ացետատային թելի թափոնների վերամշակման նպատակով: Հայտնի է, որ թափոնների վերամշակումից ստացվող եկամտի հիմնական մասը հատկացվում է աշխատողների նյութական խրախուսմանը, արտադրության ընդլայնմանը, սոցիալ-կուլտուրական միջոցառումներին և բնակարանային շինարարությանը: Այսպիսով, արտադրության արդյունավետության բարձրացման միջոցով մարդկանց կուլտուր-կենցաղային ու աշխատանքային պայմանների բարելավումը խթանում է նաև էկոնոմիկայի է՛լ ավելի ինտենսիվացմանը, գործնականորեն հաստատում, որ տնտեսական ու սոցիալական զարգացման պլանավորումն ըստ էության միասնական պրոցես է:*

*Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թվականի նոյեմբերյան պլենումում, հիսուն տարում կուտակվել է էկոնոմիկայի պլանային զարգացման, տնտեսական, գիտատեխնիկական, սոցիալական պրոբլեմների կոմպլեքսային լուծման հսկայական փորձ: Դրա հիման վրա են այժմ մշակվում տասնմեկերորդ հնգամյակի և մինչև 1990 թվականն ընդգրկող հեռանկարային պլանների նախագծերը: Խնդիրն այժմ այն է, որ որակապես նոր մակարդակի բարձրացվեն մեր ամբողջ պլանային աշխատանքը, պլանավորման բուն բովանդակությունը, ավելի խոր իմաստավորվեն այն տնտեսական ու սոցիալական պրոբլեմները, որ ծնում է կյանքը, լիակատար պատասխանատվությամբ և նախաձեռնությամբ*

մրցությունում հաղթող է ճանաչվել և արժանացել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։

Մեզ մոտ կան ձեռնարկություններ, որոնք հագեցված են ավտոմատացված տեխնիկայով, աշխատանքի արդիական պայմաններով և կան տեղական արդյունաբերությանը հատուկ փոքր ձեռնարկություններ, որտեղ շատ աշխատանքներ կատարվում են ձեռքով և որոնց մեքենայացումը պահանջում է արմատական բարելավում։ Այդ պայմաններում սոցիալական ակտիվ քաղաքականությունը և պլանավորումը կոչված են արտադրահարաբերությունների կատարելագործման մարզում կոնկրետացնելու խնդիրները տարբեր պայմաններում աշխատող կոլեկտիվներին համապատասխան։ Ընդ որում, հատուկ ուշադրության են արժանի այն ճյուղերն ու տեղամասերը, որտեղ դեռևս պահպանվում է ծանր, ոչ որակյալ և անհրապուրիչ աշխատանքը։ Այստեղ պետք է ներդրվեն ավելի շատ ջանքեր ու միջոցներ, քան դա արվում էր նախկինում։

Տարեցտարի կրճատվում է տարրական կրթություն ունեցող աշխատունակ բնակչության թիվը։ Աշխատուժի նոր համալրումներն աստիճանաբար լինելու են միջնակարգից։ Եվ աշխատուժի անբավարարության պայմաններում ամենից շատ դժվարություններ պետք է կրեն հենց ծանր, ոչ որակյալ, անհրապուրիչ աշխատանքի տեղամասերը։ Այսպիսով, հեռանկարում անհրաժեշտ է խիստ կրճատել ոչ որակյալ աշխատանքը, ծանր ու աշխատատար օժանդակ գործերը թողնելով մեքենաներին։ Ե՛վ տնտեսական, և՛ սոցիալական տեսամով նպատակահարմար չէ նմանօրինակ աշխատանքներում օգտագործել բարձր որակավորում ունեցող մարդկանց։ Ահա թե ինչու այնպես կարևոր է այսօրվանից իսկ մոբիլիզացնել հնարավորին չափ շատ ուժեր ու միջոցներ մեքենայացման համար։ Փորձը վկայում է, որ այնտեղ, ուր խելացիորեն է կազմակերպվում ոչ որակյալ ձեռքի աշխատանքի կրճատման գործը, այդ նպատակով միշտ կգտնվեն միջոցներ։ Ներքին ռեզերվների օգտագործումը մեծացնում է սոցիալական պլանավորման ու կառավարման դերն ու ակտիվ ազդեցությունը աշխատանքային կոլեկտիվների սոցիալական զարգացման վրա։

Կառավարման ամեն մի մակարդակում սոցիալական զարգացման պլանն ունի իր առանձնահատկությունները։ Բնական է, որ ձեռնարկության և շրջանի կամ քաղաքի խնդիրներն ու տնտեսական հնարավորությունները տարբեր են։ Սոցիալ-հոգեբանական մթնոլորտը կարելի է կարգավորել արտադրամասում կամ ձեռնարկությունում, բայց նույն բանը գործնականորեն շատ դժվար է կատարել շրջանի կամ քաղաքի մասշտաբով։ Դրա փոխարեն կրթության, կուլտուր-կենցաղային սպասարկման պրոբլեմները հեշտ է լուծել շրջանի, քաղաքի մասշտաբով։ Ծանր ու ոչ որակյալ աշխատանքի կրճատման պրոցեսը կընթանա ավելի արագ, եթե համապատասխանեցվեն ձեռնարկությունների կոլեկտիվների և ճյուղի սոցիալական զարգացման պլանները։ Ահա թե ինչու տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման միջոցառումների թվում, որպես մոտ ապագայի առաջնահերթ խնդիր, նախատեսվում է մշակել ձեռքի աշխատանքի կիրառումը կրճատելու նպատակային կոմպլեքս ծրագիր, կապակցելով այն տնտեսական ու սոցիալական զարգացման հեռանկարային պլանի համապատասխան բաժինների, նյութական ու ֆինանսական ռեսուրսների հետ։

Հետևաբար, շատ կարևոր է, որպեսզի սոցիալական զարգացման պլաններ շրջանի կամ քաղաքի մասշտաբով մշակեն նաև ժողովրդական դեպուտատների սովետները, այն հաշվով, որպեսզի այդ միջոցառումը չպարփակվի առանձին ձեռնարկություններում կամ ճյուղերում և դրա հնարավորություններն օգտագործվեն լիովին։ Դրա համար անհրաժեշտ է հասնել այն բանին, որպեսզի ձեռնարկությունների ու ճյուղերի սոցիալական զարգացման պլանները կազմվեն անպայման շրջանային, քաղաքային, գյուղական ու ավանային սովետների, դրանց դեպուտատային հանձնաժողովների մասնակցությամբ։

Ի դեպ, ըստ ՍՍՀՄ նոր սահմանադրության, ժողովրդական դեպուտատների սովետները լիազորված են ապահովելու կոմպլեքսային տնտեսական ու սոցիալական զարգացումը, ղեկավարելու պետական, տնտեսական ու սոցիալ-



կուլտուրական շինարարությունը, հաստատելու տնտեսական ու սոցիալական զարգացման պլանները, կոորդինացնելու ու վերահսկելու իրենց տերիտորիայում գտնվող բոլոր ձեռնարկությունների, հիմնարկությունների ու կազմակերպությունների գործունեությունը հողօգտագործման, բնության պահպանման, շինարարության, աշխատանքային ռեսուրսների օգտագործման, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության, բնակչության սոցիալ-կուլտուրական, կենցաղային և այլ սպասարկման ասպարեզներում, ինչպես նաև իրականացնելու իրենց գործունեությունը հասարակական կազմակերպությունների ու աշխատանքային կոլեկտիվների հետ։

Տեղական սովետները հանդես են գալու որպես իրենց տերիտորիայում տնտեսական և սոցիալական կոմպլեքսային զարգացման գլխավոր ուժ։ Նրանց նյութական հնարավորությունները է՛լ ավելի են սերտորեն շաղկապվելու ձեռնարկությունների աշխատանքի արդյունքների հետ։ Զգալիորեն ավելի է ուժեղացվելու սովետների վերահսկողությունը պլանների կատարման, սովետական օրենքների անշեղ կիրառման նկատմամբ, որը տնտեսական մեխանիզմի արդյունավետ գործողության պարտադիր նախադրյալներից է։ Այդպիսի գործելակերպն ապահովում է ժողովրդատնտեսական վերջնական բարձր արդյունքների հասնելու առավել արդյունավետ ուղիների ընտրությունը, ճյուղային ու տերիտորիալ զարգացման, հեռանկարային ու ընթացիկ պլանների ռացիոնալ զուգակցումը, միջճյուղային և ներճյուղային համամասնությունների կատարելագործումը, էկոնոմիկայի հաշվեկշռված աճը, որոնք ամբողջ պլանային աշխատանքի բարելավման կարևորագույն ուղղություններն են։

Ընդ որում, այդ աշխատանքի էական տարրերից մեկն էլ տնտեսական ու սոցիալական զարգացման կոմպլեքսային պլանավորումն է ո՛չ միայն տերիտորիալ ու ճյուղային, այլև յուրաքանչյուր ձեռնարկության ու կազմակերպության առումով։ Դրանով իսկ հնարավորություն կընձեռվի պլանավորման մեջ լայնորեն օգտագործելու ծրագրային-նպատակային մեթոդը, իրականացնելու կոմպլեքսային ծրագրերի մշակումն առավել կարևոր գիտատեխնիկական ու սոցիալ-տնտեսական պրոբլեմների բնագավառում։

Այդ պրոբլեմները լուծվում են ՍՄԿԿ XXV համագումարի և կուսակցության ու կառավարության՝ տնտեսական մեխանիզմի կատարելագործման նպատակով մշակած լայն միջոցառումներին, արդյունավետության և որակի բարձրացման պահանջներին համապատասխան։

## Մամուլի էջերից

# ՓՈՐՁԸ՝ ԽՈՇՈՐ ՊԼԱՆՈՎ

### ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՈՐՈՆՈՒՄ

Լենինականի քաղաքային սովետի գործկոմի նիստն էր: Գործկոմի անդամների առջև Կիրովի փողոցի վերակառուցման՝ քաղաքաշինական խորհրդի առաջարկած նախագիծն էր: Այն պետք էր քննարկել ու հաստատել: Երկրորդ հարցը թերևս ավելի բարդ էր. պահանջվում էր նշել քաղաքում բնակելի, կուլտուր-կենցաղային օբյեկտների կառուցումն արագացնելու հնարավորություն ընձեռող ուղիներ: Դրանց շուրջ էլ կայացավ գործնական, հիմնավորված խոսակցություն:

Իսկ հաջորդ առավոտյան հանրապետական «Կոմունիստ» լրագրում քաղաքացիներն արդեն կարդացին հանգամանալի ռեպորտաժ գործկոմի նիստի մասին: Նրանք հետաքրքրական շատ բան իմացան. և՛ ապագա Կիրովի փողոցի նախագծի, նրա գեղարվեստական-ճարտարապետական տեսքի, և՛ այն մասին, թե ինչ է որոշել ձեռնարկել գործկոմը՝ գործարկվելիք օբյեկտների շահագործման հանձնումն արագացնելու համար: Խմբագրությունը դրսևորեց խրախուսելի օպերատիվություն, և ընթերցողները գնահատեցին այն:

Հարկ է տեղնուտեղը նշել, որ հանրապետական տպագիր օրգանի պրակտիկայում ավելի ամուր է հաստատվում սիստեմատիկ ինֆորմացիան հանրապետության սովետների, նրանց մշտական հանձնաժողովների, գործադիր կոմիտեների, դեպուտատական խմբերի աշխատանքի մասին: Լրագիրը ձգտում է իր ընթերցողներին բավականին հանգամանորեն ծանոթացնել նրանց գործունեության տարբեր կողմերին, բնակչությանն իրազեկ պահել սովետների գործերին և պլաններին, օգնում է լավ կողմնորոշվելու կոնկրետ հարցերում, ընտրողների հետ տարվող աշխատանքի հիմնական ուղղություններում: Ինչպիսի՞ պրոբլեմներ է մտադիր քննարկել իշխանության տեղական օրգանն իր նստաշրջաններում, ի՞նչ է ձեռնարկում նա բնակչության առջև դեպուտատների հաշվետվությունների ժամանակ արված քննադատական դիտողությունները կատարելու համար, ինչպե՞ս են այս կամ այն գործկոմում լուծվում մարդկանց առևտրական, կենցաղային և բուժական սպասարկման բարելավման հարցերը. ահա շրջանակն այն պրոբլեմների, որոնք բնորոշ են կանոնավոր հրապարակվող «Ընտրողը, դեպուտատը, սովետները» թեմատիկ էջի համար:

Անդրադառնանք նրա հրապարակումներից մեկին: Այն բավականաչափ ծավալուն ինֆորմացիա է պարունակում հանրապետության իշխանության տեղական մարմինների պրակտիկայի վերաբերյալ: Անիի շրջանային սովետի գործկոմի նախագահ Ս. Անդիկյանը, օրինակ, պատմում է այն մասին, թե ինչպես դեպուտատները, հենվելով հասարակայնության վրա, վերահսկում են հողօգտագործման ասպարեզում օրենսդրության պահպանմանը: Մի այլ հրապարակում նվիրված է Վերին Արտաշատի գյուղական սովետի կուլտուրայի մշտական հանձնաժողովի գործունեությանը: Այդ հանձնաժողովն աշխատում է ակումբների ու գրադարանների ակտիվիստների հետ սերտորեն համագործակցած: Ուշագրավ է «Լուրեր տեղերից» ինֆորմացիոն խորագիրը:

Հանգամանորեն լուսաբանվում է ընտրողների պատվիրանների կատարման ընթացքը: Ընդ որում, լրագիրը բացահայտում է, թե ինչպիսի հնարավորություններ են օգտագործվում պատվիրանների իրականացման համար, որն է դրանում դեպուտատի դերը: Ի միջի այլոց, գրույցի թեման հուշել են իրենք՝ ընտրողները:

«Կոմունիստի» տեսադաշտում են հանրապետության սովետների գործունեության կարևորագույն կողմերը: Լրագիրը գրում է այն մասին, թե իշխանության մարմիններն ինչպես են իրականացնում իրենց լայն լիազորությունները, ուժեղացնում ազդեցությունը մասսաների շրջանում, կատարելագործում աշխատանքի ոճն ու մեթոդները: Ասվածի հաստատումն է մշտական խորագրերի պարզ թվարկումն իսկ— «Սահմանադրությունը ապրում, աշխատում, գործում է», «Տեղական սովետները, պրակտիկա և փորձ», «Դեպուտատի ամբիոն», «Գործկոմի աշխատանքի ոճը», «Սովետները և դաստիարակությունը»:

Լավ է, որ լրագրային էջերից լայն պլանով ներկայացվում է իշխանության ամենաներկայացուցչական մարմինների մասսայական օղակների՝ շրջանային, ավանային և գյուղական սովետների գործունեությունը: Ինչո՞վ են նրանք ապրում, ինչպիսի՞ պրոբլեմներ են լուծում, ի՞նչ է սովորեցնում լավագույնների պրակտիկան: Ահա «Կոմունիստի» նպատակային էջերից մեկը, որը նվիրված է Ջողունիի գյուղական սովետի փորձին: Սովետի, նրա գործկոմի, դեպուտատների՝ կենդանի գործերով, հոգսերով, ուրախություններով լի բազմակողմանի գործունեությունն է կազմում իշխանության տեղական մարմինների աշխատանքային առօրյան: Լրագիրը համոզիչ կերպով, կոնկրետ նյութի հիման վրա ցույց է տալիս, թե գյուղական սովետին ինչպես է հաջողվել դառնալ իր տերիտորիայի հոգածու տերը, մասսաների հմուտ կազմակերպիչը: Ժողովրդի ընտրյալների նախաձեռնությամբ մշակվել է գյուղի կառուցապատման գլխավոր պլանը, այգիների վերակառուցման ու վերափոխման պլանը, նախատեսվել է անասնապահական ֆերմաների կոմպլեքսային մեքենայացման արագացման, բնակչության կուլտուրական և կենցաղային սպասարկման բարելավման ծրագիրը:

Ընթերցողն ուսանելի շատ բան է իմանում. ինչպես են նախապատրաստվում գործկոմի նիստերը, գյուղական սովետի դեպուտատներն ինչպես են իրականացնում հսկողությունը որոշումների կենսագործման նկատմամբ, կազմակերպում աշխատանքը ընտրական օկրուգներում, ամրապնդում կապը հասարակական ինքնագործ կազմակերպությունների հետ:

Լրագիրը նպատակային բաժիններ է նվիրել նաև Հոկտեմբերյանի ու Թալինի շրջանային, Լենինականի և Չարենցավանի քաղաքային սովետների աշխատանքին: Ավելի քան կես տարի է նրա էջերում «Ի՞նչ կարող է անել գյուղական սովետը» խորագրի տակ խոսակցություն է ծավալվում այն հարցի շուրջ, թե ինչպես իշխանության տեղական մարմինը լիովին և ավելի արդյունավետ պետք է օգտագործի իր լիազորություններն ու հնարավորությունները: Հետաքրքրական մտքեր են փոխանակել գործկոմների նախագահները, մշտական հանձնաժողովների անդամները, դեպուտատները: «Լինել գյուղի տերը», «Գործկոմը կոլեկտիվ մարմին է», «Հողը մեր հարստությունն է», «Եթե ակտիվ են հանձնաժողովները», «Դեպուտատը և սպասարկման ոլորտը», «Որոշումը և կատարումը»— ահա ոչ լրիվ ցանկը այն հարցերի, որոնցով հանդես են եկել նրանք լրագրում:

### ՀԵՂԻՆԱԿԸ ԴԵՊՈՒՏԱՏՆ Է

«Կոմունիստի»՝ հմտորեն պլանավորված, լավ ձևավորված յուրաքանչյուր դեպուտատական էջ ամբիոն է ժողովրդի ընտրյալներին հուզող հարցերի վերաբերյալ սրտաբաց ու գործնական խոսակցություն ծավալելու համար: Հանրապետության սովետների բոլոր օղակների (Գերագույնից մինչև գյուղականը) դեպուտատները հաղորդում են իրենց աշխատանքի փորձը, առաջադրում էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման հասունացած հարցերը, հուշում են դրանց լուծման ուղիները, մտորում, թե ինչ ձևով ավելի լավ, արդյունավետորեն կատարեն իրենց հանձնարարությունները:

...Հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ Ա. Գրիգորյանը նամակ էր ստացել. Սյունիքի սովխոզի բանվորները բողոքում էին, որ երթուղային ավտոբուսների վարորդները խախտում են երթևեկության չվացուցակները: Նա, անշուշտ, կարող էր դիմել ավտոձեռնարկության պետին և պահանջել վերացնել թերությունները: Բայց դեպուտատը որոշել է լինել տեղում, հանդիպել նամակի հեղինակների հետ, ավելի խոր թափանցել գյուղական բնակիչների ավտոբուսային ծառայության պրոբլեմների մեջ: Այցելությունն օգնեց հարցի օպերատիվ լուծմանը: Իսկ գլխավորը՝ ամրապնդվեց ընտրողների վստահությունը սովետի իրենց պատվիրակի հանդեպ, որն այնքա՜ն կարևոր է նրա հաջող գործունեության համար: Մարդիկ զգացին, որ իրենց հոգսերը, կարիքները հուզում են դեպուտատի մանդատ ունեցող մարդուն:

Խորհրդածելով իր երկարամյա պրակտիկայում այդ առտնին միջադեպի մասին, Ա. Գրիգորյանը հիշեցնում էր երիտասարդ դեպուտատներին. շատ կարևոր է ուշադիր, անձնական խոր շահագրգռությամբ վերաբերվել յուրաքանչյուր ահազանգի, ընտրողի նամակի քննարկմանը, կարողանալ կենցաղային համեստ խնդրանքի ետևում տեսնել շատերին հուզող պրոբլեմը:

Դեպուտատների հետաքրքրական, ուսանելի օրինակներով, խորհրդածություններով նամակները աննկատ չեն մնում: Դրանք, որպես կանոն, աշխույժ արձագանք են գտնում: Կիրովականի շինարարական տրեստի մեխանիզատոր, հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ Ֆ. Մոսոյանը հանգամանորեն պատմել է այն մասին, թե ինչպես է զբաղվում ընտրողների նամակներով, ուսումնասիրում հասարակական կարծիքը և այդ առնչությամբ ինչպիսի դժվարություններ ու պրոբլեմներ են ծագում: Չէ՛ որ հարկ է լինում բախվել ամենաբազմազան՝ սովորական և բարդ, անձնական և հասարակական գործերի հետ: Օրինակ, քիմիական գործարանի բանվոր Ա. Մանուկ-

յանը խնդրել էր բացատրել, թե ինչու քաղաքում չի բավականացնում խմելու ջուրը: Այդպիսի նամակը գզրոցում չես թողնի. հարկ էր գործել: Բայց ինչպե՞ս: Ինչի՞ց սկսել: Դեպուտատն առաջին հերթին գնացել է քաղաքային սովետի գործկոմ: Այնտեղ բացատրել են, որ կառուցվում են ջրատարի երկրորդ հերթը, մաքրման կայանը: Դրանց գործարկմամբ քաղաքը լիովին կապահովվի ջրով: Բայց բանվորին կբավարարի՞ այդքան դիմազուրկ պատասխանը: Հազիվ թե: Հետաքրքրվեց օբյեկտի շինարարության ընթացքով: Պարզվեց, վիճակը ծանր էր: Ֆ. Մոսոյանը եղավ ջրատարի և մաքրման կայանը կառուցող տրեստի ղեկավարների մոտ: Նրանք հասկացան դեպուտատի տագնապը, շինարարության արագացման հարցը քննարկեցին կուսկոմիտեի նիստում, վերանայեցին աշխատանքային գրաֆիկը, կառույցը ամրապնդեցին կադրերով, սահմանեցին մշտական հսկողություն: Այդ ժամանակ միայն դեպուտատը «փակեց» ընտրողի նամակը:

Ինչպիսի՞ դաս կքաղի իր համար սովետի երիտասարդ պատգամավորը, որին հասցեագրված է այս պատմությունը: Փորձառու դեպուտատը նորից ու նորից կհիշեցնի նրան. ոչ թե ձևականորեն, այլ ուշադրությամբ հաշվի առ մարդու խնդրանքը, խորացիր գործի էության մեջ: Իսկ այն պարզելուց հետո ուժ ու եռանդ մի խնայիր բավարարելու համար:

«Ժողովրդի ընտրյալի ամբիոն» խորագրի նյութերի արժեքավորությունը, առանձնահատուկ ուշագրավությունը թերևս այն է, որ դրանք սոսկ չեն հաղորդում փաստերը, այլ վերլուծում են կոնկրետ իրադրությունը, կյանքից վերցված օրինակներով սովորեցնում են դեպուտատական աշխատանքի արվեստը:

Խմբագրությունը ձգտում է ընդլայնել դեպուտատի գործունեության պրոբլեմների շուրջ խոսակցության շրջանակը, հաղորդել դրան մտերմիկ տոն, մշտապես որոնում է ուսանելի փորձի և դեպուտատ հեղինակների հասցեներ: Խմբագրության սովետական շինարարության բաժնում հեղինակի հետ միասին լրագրողները քննարկում են ապագա ելույթի թեման, կազմում հարցերի մոտավոր խումբը, որոնց վրա կուզենային սևեռել ուշադրությունը: Հենց այդպիսի ստեղծագործական սերտ համագործակցությամբ են ծնունդ առել հասարակական լայն արձագանք գտած «Խորհրդածություններ ընդունելությունից հետո», «Հարցը բարձրացված է նստաշրջանում», «Իմ փաստը», «Դիմումը հաշվառման է վերցված», «Ե՛վ պատասխանատվություն, և՛ նախաձեռնություն», «Ըստ բնակության վայրի» հոդվածները:

Միայն անցյալ տարի հանրապետական լրագրի էջերում հանդես է եկել մոտ քառասուն դեպուտատ: Նրանք սրությամբ են արծարծել տնտեսական և կուլտուրական շինարարության հասունացած հարցերը, առաջարկել միջոցներ գործկոմների, դրանց բաժինների և վարչությունների գործունեությունը կատարելագործելու նպատակով: Եվ առաջարկություններն ուշադիր քննարկվել են: Այո՛, դա հասկանալի է. չէ՞ որ դեպուտատը համապետական շահերի արտահայտիչն է, նրա խոսքը ծանրակշիռ է, հեղինակավոր:

## ՏԵՍԱԴԱՇՏՈՒՄ ԱՇԽԱՏԱՆՔՆ Է ՕԿՐՈՒԳՈՒՄ

Կուլտուրայի տուն. հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ, Կոտայքի կոլտնտեսության նախագահ Զաքար Երվանդի Զաքարյանի հետ հանդիպմանը եկել էին շատ գյուղերի մարդիկ: Չէ՞ որ հետաքրքրական էր լսել, թե ինչ նորություններ ուներ նա: Կուտակվել էին նաև դեպուտատի միջամտությունը պահանջող առօրյա տարբեր հարցեր:

Զաքարյանն իր պատմությունն սկսեց այն բանից, թե ինչպես են կատարվում ընտրողների պատվիրանները: Դրականորեն է լուծվել նոր ավտոմատ հեռախոսակայանի կառուցման հարցը, ավարտվել է կոլտնտեսային ստադիոնի նախագծի մշակումը, գործելու է ավտոբուսային լրացուցիչ երթուղի՝ շրջկենտրոնից Արամուս:

Մարդիկ գոհ են. լավ, խղճմտանքով է աշխատել սովետի իրենց պատգամավորը: Բայց կյանքը տեղում կանգնած չէ: Անում են գյուղացիների պահանջներն ու հետաքրքրությունները: Եվ արդեն նոր հարցեր են առաջադրվում դեպուտատին. հողերի մելիորացման ընդլայնման ինչպիսի՞ հեռանկարներ կան, ինչո՞ւ է այդքան աղքատիկ խաղացանկը գյուղական ակումբներում:

Իր ընտրողների պահանջներին ժամանակին իրազեկ լինելու և դրանց բավարարմանը ակտիվորեն նպաստելու նպատակով դեպուտատ Զաքարյանը ջանում է միշտ լինել մասսաների խորքում, ուսումնասիրել մարդկանց տրամադրությունը, կարիքները, իր խոհերն ու գործերը համաձայնեցնել նրանց կամքին: Եվ լրագիրը պատմել է այն մասին, թե ինչպես է նա կազմակերպում գործը ընտրական օկրուգում, այդ նպատակին նվիրելով մի ամբողջական էջ: Եվ, կարծում ենք, չի սխալվել:

Ընտրական օկրուգը ժողովրդի ընտրյալի պետական գործունեության գլխավոր ասպարեզն է: Այստեղ նա մշտապես հանդիպում է մարդկանց հետ, պարզաբանում սովետի որոշումները, պլանները, ընդունում ընտրողներին, կազմակերպում բնակչությանը՝ պատվիրանները կատարելու: Հանրապետության Գերագույն սովետի նախագահությունը մշակել է կազմակերպական միջոցառումներ՝ կապված օկրուգներում դեպուտատի գործունեության հետագա կատարելագործման հետ: Մասնավորապես, հաշվի առնելով ցանկությունները, նա նպատակահարմար է գտել սահմանել ընտրողների հետ հանրապետության դեպուտատների հանդիպման միասնական օր: Դրան նախապես պատրաստվում են քաղաքային և շրջանային սովետները, իշխանության բարձրագույն մարմնի դեպուտատները և, անշուշտ, նաև ընտրողները: Եվ որոշակի օրը հանրապետության Գերագույն սովետի բոլոր դեպուտատները մեկնում են իրենց օկրուգները: Հաշվետու են լինում ընտրողների առաջ, նրանց տեղեկացնում են այդ ժամանակամիջոցում (հանդիպման միասնական օրերն անցկացվում են տարին երեքից-չորս անգամ) իշխանության բարձրագույն մարմնի ծավալած աշխատանքին, կատարում ընդունելություն:

Իհարկե, դեռևս վաղ է դատել, թե որքանով է արդյունավետ այդ նորույթը: Բայց այն փաստը, որ ընտրական օկրուգում դեպուտատի գործունեությանը Հայաստանում այդքան սևեռուն ուշադրություն է նվիրվում, ինքնին չի կարող չուրախացնել: «Կոմունիստ» և «Սովետական Հայաստան» հանրապետական լրագրերը լայնորեն լուսաբանում են ընտրողների հետ դեպուտատների հանդիպման օրերը՝ դրանց նվիրելով հատուկ էջեր: Դրանց հիմնական հեղինակները՝ դեպուտատները, պատմում են, թե ինչպես են ուսումնասիրում հասարակական կարծիքը, ինֆորմացիա տալիս բնակչությանը, կազմակերպում նրան՝ կատարելու ընտրողների պատվիրանները, նախապատրաստվում հանդիպումներին:

Այսպես, բնակչության հետ հերթական հանդիպումից հետո իր խորհրդածություններն է հաղորդել հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ Պ. Նազարեթյանը: Նա հավաստել է, որ պետք է ավելի շատ սրտացավ, անմիջական հաղորդակցում մասսաների հետ, որպեսզի հանձին քեզ, նրանք տեսնեն հոգեհարազատ ու գիտակ զրուցակցի: Պարզ, ընկերական զրույցի ընթացքում հեշտ է բացվում մարդու սիրտը, ընտրողները սիրով են հայտնում իրենց կարծիքը: Հենց օկրուգի ընտրողների հետ սերտ շփումն է օգնել իրեն, գրել է դեպուտատը, ավելի լավ կողմնորոշվելու իրադրության մեջ, պարզորոշ տեսնելու քաղաքացիներին հուզող պրոբլեմները: Շատ բան են հուշել մարդիկ. հարկավոր է ուժեղացնել հասարակական վերահսկողությունը առևտրի նըկատմամբ, արագացնել գազամաքրիչ կառույցի շինարարությունը Քանաքեռի ալյումինի գործարանում, ավելի ակտիվ զբաղվել նոր միկրոշրջանների բարեկարգմամբ:

«Պարտքի նկատմամբ ակտիվ ծառայություն» նոր թեմատիկ էջը հնարավորություն է ընձեռել «Կոմունիստ» լրագրին՝ հանգամանորեն լուսաբանելու ժողովրդի ընտրյալների աշխատանքի փորձը, բնակչությանը լիովին տեղեկացնելու սովետում իրենց պատվիրակի հետ ունեցած հանդիպումների ժամանակ ընտրողների բարձրացրած խնդիրներին: Հաստատուն տեղ է գտել նաև «Ընտրական օկրուգներում» մշտական խորագիրը:

## ՀԱՐՑՆ ԱՌԱՋԱԴՐՎԱԾ Է, ԻՍԿ ՀԵՏՈ՞...

Ցավոք, լրագիրը ոչ միշտ է սկսած լավ գործը հասցնում մինչև վերջ: Նույնիսկ այն սուր հարցերը, որոնք բարձրացվում են դեպուտատական հրապարակումներում, հաճախ մնում են անպատասխան: Ահա օրինակները:

Երևանի քաղաքային սովետի դեպուտատ Գ. Բալդրյանին էին դիմել № 94 դպրոցի աշակերտների մի խումբ ծնողներ: Ընտրողները խնդրել էին միջնորդել, որպեսզի վերացվի անմիջականորեն դպրոցի շքամուտքի մոտ գտնըվող առևտրական կետը: Խնդրանքը լիովին հիմնավորված էր, և դեպուտատը գրավոր հարցում է ուղարկել Շահումյանի շրջանային սովետի գործկոմ: Բայց լրացան օրենքով սահմանված բոլոր ժամկետները, իսկ պատասխան նա չստացավ: Որոշեց լինել գործկոմում: Ինչպե՞ս դիմավորեցին այնտեղ դեպուտատին: «Ուղարկեցին ինձ բաժնից բաժին,— գրել է նա,— բայց հարցին կոնկրետ պատասխան չտվեցին: Ավելին, որոշ աշխատողներ սկսեցին ինձ նայել որպես պնդերես հաճախորդի»:

Դեպուտատն արդարացիորեն էր դրել հարցը. ինչո՞ւ է նման բան տեղի ունենում: Չէ՞ որ և՛ դեպուտատական ստատուսի վերաբերյալ օրենքում, և՛ ՍՍՀՄ սահմանադրությունում հստակ գրված է, որ ժողովրդի ընտրյալն իրավունք ունի դեպուտատական գործունեության հարցերով դիմելու պետական և հասարակական մարմիններին, ձեռնարկություններին, հիմնարկություններին ու կազմակերպություններին, պաշտոնատար անձանց, որոնք պարտավոր են քննարկել առաջադրված հարցը և պատասխանել սահմանված ժամկետում:

Լրագիրը դեպուտատի նամակը տպագրել է «Ընտրողը, դեպուտատը, սովետները» հերթական թեմատիկ էջում: Իսկ հետո՞: Քննարկվե՞լ է, արդյոք, նյութը շրջանային սովետի գործկոմում, պատժվե՞լ են մարդիկ քաշքշուկի, օրենսդրության ուղղակի խախտման համար: Այդ մասին կարելի է սոսկ գուշակություններ

անել, քանի որ լրագիրը ոչ մի բան չի հաղորդել:

Մի օրինակ ևս: Հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ Վ. Ծաքոյանի ընդունելության ժամանակ բանվորները ցանկություն հայտնեցին. չի՞ կարելի կիրակի օրերին ավելացնել Լենինական—Երևան երթուղու ավտոբուսների քանակը: Վ. Ծաքոյանը եղավ ավտոկայանում: Եվ ահա թե ինչ պարզվեց. աշխատանքային օրերին ավտոբուսները գնում են կիսադատարկ, իսկ կիրակի օրը մեկնելն իրոք շատ դժվար է: Դեպուտատը գրավոր հարցումով դիմել է հանրապետության ավտոտրանսպորտի մինիստր Վ. Մ. Հովհաննիսյանին: Անցել է մի քանի ամիս, իսկ մինիստրությունից, ինչպես ասում են, ձեն-ծպտուն չկա: Այդ մասին դեպուտատը գրեց հանրապետական թերթին, հուսալով, որ փաստը պատշաճորեն կգնահատվի կուսակցական և սովետական մարմիններում, կստիպի որոշ պաշտոնատար անձանց՝ ավելի հարգալից վերաբերվել ժողովրդի ընտրյալի կարծիքին: Սակայն քննադատական ահազանգն, ըստ էության, մնաց անպատասխան:

Ինչո՞ւ է այդպես լինում: Բանն այն է, որ տպագիր օրգանը չի դրսևորում անհրաժեշտ հաստատակամություն «Ընտրողը, դեպուտատը, սովետները» թեմատիկ էջի քննադատական նյութերի ներգործունության համար մղվող պայքարում: Միանգամայն պարզ է, որ բավական չէ միայն բարձրացնել պրոբլեմը, դրա վրա սևեռել հասարակայնության ուշադրությունը: Անհրաժեշտ է սկսած գործը հասցնել մինչև վերջ: Եվ այստեղ, կարծում ենք, որ բավական չէ միայն եռապատկել իր իսկ՝ խմբագրության ջանքերը, որը, հասկանալի է, ունի առաջնահերթ նշանակություն: Կարևոր է նաև, որ ավելի կոնկրետ ու արդյունավետ լինեն հանրապետության Գերագույն սովետի նախագահության ապարատի՝ նրան ցույց տրվող օգնությունն ու աջակցությունը: Այդ դեպքում, անտարակույս, ավելի կաճեն «Կոմունիստի» «դեպուտատական» էջերի հեղինակությունն ու ներգործունությունը, էջեր, որոնք ամուր արմատավորվել են թերթում, արժանացել ժողովրդի ընտրյալների, բոլոր ընթերցողների ճանաչմանը:

**Լ. ԿՈՒԼԵՎ**

**«Советы народных депутатов»**
**ամսագրի հատուկ թղթակից**
Ք. Երևան, Հայկական ՍՍՀ

«Советы народных депутатов»,
1980 г., № 3.

# *ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՓԱՐՈՍԸ*

**ԻՐԱԿԱՆԱՑԱՎ** Մաքսիմ Գորկու վաղեմի ցանկությունը. մեր երկրի ժողովուրդների գրական ստեղծագործությունների լավագույն նմուշները պրոպագանդելու նպատակով 1939 թվականին կազմակերպվեց ալմանախ: 1955 թ. հունվարից այն դարձավ ամենամսյա գրական-գեղարվեստական, հասարակական-քաղաքական համամիութենական ամսագիր՝ «Дружба народов», որն արդեն չորս տասնամյակ է, ինչ ո՛չ միայն պրոպագանդում, այլև ակտիվ մասնակցում է սովետական բազմազգ գրականության ձևավորմանն ու զարգացմանը՝ մշտապես որոնելով, հայտաբերելով նոր անուններ և սովետական ու համաշխարհային ճանաչված գրողների հետ մեկտեղ տպագրում նաև երիտասարդների:

Ամսագրի էջերում իր արժանի տեղն է գրավում և պատշաճ լուսաբանվում է նաև հայ դասական ու ժամանակակից գրականությունը, գրականություն, որի մասին 1916 թվականին Հայաստանի պոեզիան հնադարից մինչև մեր օրերը անթոլոգիայի ներածական հոդվածում ռուս մեծ երախտավոր Վալերի Բրյուսովը գրել է. «...ուսումնասիրելով Հայաստանի պոեզիան, ես բազմիցս զարմացած կանգ եմ առել ամենից առաջ նրա առանձին ստեղծագործությունների բացառիկ կատարելության առջև: Հայկական ժողովրդական պոեզիան դասվում է ինձ հայտնի բոլոր ստեղծագործություններից առավել նշանավորների թվին. քիչ ժողովուրդներ կարող են հպարտանալ, որ իրենց ժողովրդական երգերը հասնում են գեղարվեստական այնպիսի մակարդակի, այնպես նուրբ ու գերող են, այնպես յուրօրինակ ինքնատիպ իրենց բնական անկեղծությամբ, անմիջական պարզությամբ... Ծանոթությունը հայկական պոեզիայի հետ պետք է պարտադիր լինի յուրաքանչյուր կրթված մարդու համար այնպես, ինչպես ծանոթությունը հելլենական ողբերգակների, Դանթեի կատակերգության, Շեքսպիրի դրամաների, Վիկտոր Հյուգոյի պոեմների հետ»: Մինչև բրյուսովյան նշանավոր անթոլոգիայի լույսընծայումը, ռուս ընթերցողին հայ գրականությանը ծանոթացնելու գործում զգալի ավանդ ունեին այնպիսի բանաստեղծներ, ինչպիսիք են՝ Յա. Պոլոնսկին, Ն. Բերգը, Լ. Ումանեցը, Կ. Բալմոնտը և, հատկապես՝ Յուրի Վեսելովսկին:

Հոկտեմբերի հաղթանակից հետո սովետական բազմազգ ժողովրդի հոգևոր արժույթները ձեռք բերեցին ազգային լեզվով ներդաշնակ զարգանալու հնարավորություն և, պահպանելով ազգային ինքնությունը, դարձան մեր երկրի բոլոր ժողովուրդների սեփականությունը: ՍՍՀՄ ժողովուրդների գրականությունը սովետական ընթերցող լայն շրջաններին ծանոթացնելու գործում առաջատար դեր է խաղում «Дружба народов» ամսագիրը, որի մասին Մարիետա Շահինյանը գրել է. «Дружба народов»-ը հայտնագործեց ոչ քիչ անուններ, որոնք, դուրս գալով հանրապետության սահմաններից, միութենական ճանաչում գտան. այն օգնեց երիտասարդ շատ տաղանդների՝ դրսևորվելու, գտնելու իրենց տեղը գրական ասպարեզում... Այն արժանացավ ընթերցողի սիրուն և իրենց ստեղծագործությունները նրա էջերում հաճույքով տպագրող սովետական խոշորագույն գրողների համակրանքին: Տարեցտարի խորանում էր նրա բովանդակությունը, մեծանում պահանջկոտությունը հրապարակվող նյութերի նկատմամբ, ճաշակը՝ նյութերն ընտրելիս:

Ամսագիրն ընթերցողներին է ներկայացրել ՍՍՀՄ յոթանասուն ազգերի ու ազգությունների ներկայացուցիչների ստեղծագործություններ, ինչպես և թարգմանություններ ֆրանսերենից, անգլերենից, իտալերենից, իսպաներենից, ճապոներենից... ընթերցողը ծանոթացավ գերմանացի, չեխ, լեհ, բուլղար, հունգար, մոնղոլ, ռումին, վիետնամցի գրողներին:

Ամսագրի 1956 թ. 5-րդ համարում ութսունամյա Ավետիք Իսահակյանը գրել է. «Թանկագին և խստապահանջ ընթերցող... խստաքարտ սիրով բաց արա «Дружба народов»-ի այս գիրքը, և թող քո ընթերցումը երջանկաբեր լինի»: Այդ համարը զուգադիպեց 1956 թ. Մոսկվայում տեղի ունեցող հայ գրականության ու արվեստի տասնօրյակին և ամբողջովին նվիրված էր այդ իրադարձությանը: Տասնօրյակի հետ միասին ամսագրի այս համարն ասես ողջ հանրապետության և գրական հասարակայնության հաշվետվությունն էր երկրի, սովետական ընթերցողի առջև: Ընթերցողները ծանոթացան Ավ. Իսահակյանի, Հ. Հակոբյանի, Ե. Չարենցի, Ն. Զարյանի, Ա. Սահինյանի, Գ. Էմինի, Հ. Շիրազի, Ս. Խանզադյանի ստեղծագործություններին: Ս. Շերվինսկու, Վ. Համբարձումյանի, Մ. Սարյանի, Վ. Անեմյանի, Ռ. Իսրայելյանի

ները»— գրել է Կ. Զելինսկին: Նա շեշտում է Բակունցի տաղանդի մի հատկություն ևս. նա արվեստագետ էր, նրա մեջ ապրում էր իրականության բազմազանության բուռն զգացումը: Նա չափազանց դյուրընկալ ու բազմաշերտ արվեստագետ էր: Իրոք անման են երգիծական էջերը, օրինակ, Կյորես պատմվածքում: Նրա Գավառական ակնարկները իրենց խայթող ծաղրով հիշեցնում են Ծչեդրինին:

Եվ միաժամանակ շատ քնքուշ գրող է Բակունցը. «Ես կասեի՝ այն նուրբ, քնարական զգացումը, որ բխում է Բակունցի՝ մարդկանց նկատմամբ տածած անկեղծ և այնքա՜ն բնական սիրուց, հատուկ սրություն է հաղորդում նրա գեղարվեստական դիտարկումներին: Դրա վառ օրինակը նրա Աչպիական մանուշակն է: Փափուն նովելը առանց այլևայլության ես կդնեի Մոպասանի նմանօրինակ նովելների կողքին»:

Կ. Զելինսկին սիրով է խոսում Բակունցի Խաչատուր Աբովյան անավարտ վեպի մասին, որի գլուխների ընթերցումից «տեսնում ես, թե ինչպիսի՜ հնարավորություններով, ինչպիսի՜ ճկունությամբ է օժտված Բակունցի ռեալիզմը»:

«Дружба народов» ամսագրի 1956 թ. № 5-ում Վ. Ցվելևի թարգմանությամբ տպագրվել է Ե. Չարենցի Իմ ընկեր Լիպոն բալլադը: Ամսագրի 1969 թվականի № 8-ը սկսվում է Լենինի մասին էջերից բաժնով: Առաջին մասում Ն. Գլազկովի թարգմանությամբ զետեղված է Չարենցի Լիրիկական անտրակտը: 1963 թ. № 10-ի այդ նույն բաժնում՝ Ե. Չարենցի Տաղարանը՝ Մ. Պավլովայի թարգմանությամբ:

Բանաստեղծությունները ուղեկցվում են Հ. Սալախյանի ներածական հոդվածով: «Տաղարան» ցիկլը Ե. Չարենցի բազմագունեղ ստեղծագործության ամենալիրիկական էջերից է: Այս բանաստեղծությունները գրվել են 1920—21 թվականներին, Մոսկվայում և Երևանում, «Փոքըր-ինչ տարօրինակ և անսպասելի էր թվում հեղափոխական բանաստեղծի, արդեն Ամբոխները խելագարված պոեմի հեղինակի կողմից միջնադարյան հայ պոեզիայի ձևերին, իր հեռավոր նախորդ Սայաթ-Նովայի ավանդույթներին դիմելը: Բայց հենց այդ է դարի մեծ բանաստեղծ Չարենցի յուրահատկությունը: Նա, ասես, հաստատումն էր այն բանի, որ արվեստում իրոք բարձր և իրոք նշանակալից ոչինչ չի կորչում անհետ: Այս իմաստով Տաղարանը հենց այն նշանակալիցի ու վսեմի շարունակությունն է, որն իր ժամանակին ստեղծել էր Սայաթ-Նովան: Բայց սա դեռևս Սայաթ-Նովայի սոսկ պարզ շարունակությունը չէ, այլ նրա հաբստացումը, նրա վերածնունդը պատմական մի նոր հիմքի, մարդկային այլ ճակատագրի նոր փորձի հիման վրա»:

1948 թվականից բանաստեղծուհի Մուզա Պավլովան որոնում էր Չարենցի Տաղարանի բանալին: Դժվար էր ռուսական բանաստեղծական ոտքին հաղորդել Տաղարանի հայերենին հատուկ հանգերը: «Ինձ թվում է, եզրափակում է Հ. Սալախյանը, որ այժմ Մուզա Պավլովան զգալիորեն լուծել է ստեղծագործական այդ բարդ խնդիրը»:

1957 թ. № 11-ում տպագրվել է ուկրաինացի նշանավոր բանաստեղծ Մաքսիմ Ռիլսկու հոդվածը՝ նվիրված Չարենցին, որին հեղինակն անվանում է հեղափոխության իսկական երգիչ, հեղափոխության դեմք: Չարենցի պոեզիան հեղափոխության ոգեշունչ երգ է: Բայց հեղափոխությունը,— շարունակում է Մ. Ռիլսկին,— անսահման բազմազան է: Եվ դրա գեղարվեստական արտացոլման հնարավորությունները ևս չափազանց բազմազան են: Հեղափոխությունն այստեղ թեմա չէ, այլ գաղափար, որի հետ կապված են անհամար թեմաներ: Եվ, եթե վերցնենք Չարենցի բոլոր ստեղծագործությունները, հաճախ նույնիսկ հակասականության մեջ, ապա դժվար չէ նկատել, թե որքա՜ն լայն ու խոր է լուսաբանել նա Երկիր Նաիրիի անցյալն ու ներկան:

Ամսագրում ուշագրավ նյութեր են տպագրվել նաև Դերենիկ Դեմիրճյանի մասին: 1956 թվականի № 8-ում տպագրվել է հայ անվանի գրականագետ Մ. Մկրյանի գրախոսականը՝ նվիրված Դ. Դեմիրճյանի գլուխգործոցին՝ Վարդանանք պատմավեպին: Դ. Դեմիրճյանն իր վեպի մասին գրել է. «Վարդանանք պատմավեպը ես գրել եմ Հայրենական պատերազմի տարիներին... Ես մտովի պատկերացրել եմ V դարը, հայ ժողովրդի անողոք պայքարը պարսկական բռնապետության դեմ:

Ես կամեցա Հայրենական պատերազմի ելած ժողովրդին հիշեցնել, որ հնում բազում պատերազմներ է նա մղել հանուն հայրենիքի պաշտպանության, որոնցից ամենանշանակալիցը Վարդանանց պատերազմն էր:

Ես մտածում էի, որ ինչպես ռուս ժողովուրդն է հիշում Կուլիկովյան մարտն ու Բորոդինոյի ճակատամարտը Նապոլեոնի դեմ, ինչպես Սովետական Միության բոլոր ժողովուրդներն են հիշում բոլոր պատերազմները հանուն իրենց հայրենիքի պաշտպանության, այնպես էլ հայ ժողովուրդը թող հիշի իրենը»: Պայքար ժողովրդի և հայրենիքի ազատագրության ու անկախության համար. այս է Վարդանանք վեպի պաթոսը:

Դեմիրճյանը նորովի իմաստավորեց այդ նշանավոր իրադարձության պատմական էությունը և լուսաբանեց այն ժամանակվա հասարակության գրեթե բոլոր խավերի կյանքն ու տեղը ազատագրական պայքարում: Նրա այսօրվա հիմքում ո՛չ միայն պատմական գործիչների անձնական փոխհարաբերություններն են, այլև ամենայն խորությամբ բացահայտված են պայքարի սոցիալական մոտիվները: Վեպում Դեմիրճյանը համոզիչ կերպով ներկայացնում է շարժման քաղաքական ու սոցիալական պատճառները, դրա համաժողովրդական բնույթը: Մեծարժեք այդ ստեղծագործությունը խոշոր ավանդ է հայ գրականության մեջ:

1964 թվականի № 12-ում ամսագիրը հրապարակեց Ռ. Բրայնինայի հուշերը Դ. Դեմիրճյանի մասին: Ռ. Բրայնինան նշում է, որ նույնիսկ խոր ծերության օրերին Դեմիրճյանը պահպանել էր ազնիվ արիությունը, մեծ կամքը այն ամենի դեմ մղվող պայքարում, ինչն անհարիր էր մարդու և քաղաքացու նրա իդեալին: Նա չէր ընդունում հաշտվողականությունը և կարողանում էր պաշտպանել այն, ինչն անհրաժեշտ էր համարում:

«Նա և՛ խորամիտ փիլիսոփա էր, և՛ նուրբ քնարերգու, և՛ ահեղ մերկացնող:

Դեմիրճյանը խորապես զգում էր գրողի պատասխանատվությունը պատմության առաջ և ոչ մի օր չէր կարող ապրել ապարդյուն, չստեղծագործել: Ամենից ավելի նա վախենում էր դատարկ, անիմաստ օրերից:

Դ. Դեմիրճյան գրողն ու մարդը մարմնավորել է հայ ժողովրդի լավագույն հատկանիշները, նրա փիլիսոփայական խորամտությունը և հայրենասիրության խոր քնարականությունը, նրա դարավոր իմաստնությունը, բուն պատմությամբ դաստիարակված նրա խոր ինտերնացիոնալիզմը»,— գրել է Բրայնինան:

Ամսագրում տպագրված է նաև Գևորգ Էմինի գրախոսականը անմոռաց Պարույր Սևակի լավագույն գործերից մեկի՝ Մարդը ափի մեջ գրքի մասին (1961, № 6):

Սևակի այս գրքում մարդը երևում է ամբողջովին՝ իր բնավորությամբ, աշխարհընկալմամբ, և զուր չէ գիրքը կոչվում Մարդը ափի մեջ: Պ. Սևակի գիրքը, ինչպես ասում է Էմինը, մեր պոեզիայի սկզբունքային հաջողություններից է, որ հնարավոր չէ գնահատել պատրաստի, կանխակալ չափանիշներով: Ոգեշունչ, ընդգրկուն բանաստեղծ է Սևակը: Իր մտքերը նա արտահայտում է ոչ թե առանձին բանաստեղծություններով, այլ ամբողջական գրքերով:

Սևակի վերջին շրջանի բանաստեղծություններում ու պոեմներում,— գրում է Էմինը,— պարզորոշ լսվում է X դարի հայ հանճարեղ բանաստեղծ Գրիգոր Նարեկացու, ինչպես նաև Ուիտմենի և Մայակովսկու ձայնը: Խոսքն, իհարկե, էպիգոնության, կրկներգության և փոխառության մասին չէ: Այս ձայներն օրգանապես միաձուլվում են, ստեղծելով այն նոր ձուլվածքը, այն նոր ձայնը, որը պատկանում է արդեն միայն ու բացառապես Սևակին:

Որպես լրացում Գ. Էմինի վերն ասված խոսքերի, հնչում է Պ. Սևակի Իմ թեման մարդն է հոդված-խոստովանությունը: «Իմ այսօրվա ըստեղծագործական և ոճական որոնումներն առաջվա նման կապված են Չարենցի, Վարուժանի, միջնադարյան հայ քնարերգության ավանդույթների հետ: Ես համոզված եմ, որ արդի պոեզիայում պետք է ավելի ուժգին հնչի անձնական, լիրիկական սկզբունքը»: Նա խիստ քննադատում է նկարագրական, մակերեսային լիրիկան: Սևակի ողջ պոեզիան իրոք բխում է հայկական և համաշխարհային պոեզիայի լավագույն ավանդույթներից:

1956 թ. № 5-ում, «Дружба народов»-ում, տպագրվել է Մ. Ծչեգլովի գրախոսականը Հովհաննես Շիրազի Հայրենիք-ի մասին: Գրախոսականը վերնագրված է Իջնելով լեռներից...: Հովհ. Շիրազի բանաստեղծությունների ժողովածուում զետեղված նրա հիանալի բանաստեղծություններից մեկում պատկերավոր կերպով նկարագրված է այն ուղին, որով երբեմն ընթանում է պոեզիան. միայնության բարձունքից՝ հովիտ, մարդկանց մոտ, վերամբարձությունից՝ բանաստեղծական շնորհների պարզություն...: Այսպես է իր հոդվածը սկսում տաղանդավոր վաղամեռիկ Մարկ Ծչեգլովը: Ժողովածուում զարմանալի ամբողջականությամբ ու ճկունությամբ է պատկերված լեռներից դեպի հովիտ ընթացող պոեզիայի բուն ոգին: Հովհ. Շիրազի ողջ պոեզիան իր ամբողջականությամբ ու զգացմունքների ուժով, վառ պատկերավորությամբ, ներքին հարատև մղումով մեզ ներկայանում է լեռներից թափվող ջրվեժի պես:

Շիրազի պոեզիան Մ. Ծչեգլովը բնութագրում է այսպես. «Դա վսեմ, հանդիսավոր, երկինքն ու երկիրը գրկող լիրիկա է, որ վերաբերում է մարդկությանն ու աշխարհստեղծմանը, կյանքին ու մահուն, լեռնագագաթներին հենված, աստղամերձ պոեզիա: Դրա պատկերավորությունն ու երանգները միտում են դեպի դասական բնափիլիսոփայական կամ ներբողային պոեզիան՝ իր վեհ ու ոգեշունչ խոսքով, վսեմ մարմնավորումներով»:

Բիբլիական առասպել պոեմի մասին նա գրում է. «Չի կարելի պատշաճը չհատուցել այս պոեմի ոգեշունչ ուժին, դրա ողբերգական կերպարներին, հիպերբոլիկ պատկերներին, որոնցում գովերգվում է աշխարհստեղծման բոլոր վշտերը կրած մարդկային հզոր ոգին, բայց որը դարավոր աշխատանքի ու տառապանքների միջով ընթանում է դեպի երջանկություն, դեպի մութ տիեզերքի նվաճումը»:

Շիրազի բանաստեղծական ներշնչանքն իր գագաթնակետին է հասնում հայրենիքին նվիրված բանաստեղծություններում: Այստեղ բանաստեղծը մոռանում է իր աստղային լեզուն, և նրա խոսքը հնչում է այլ կերպ, մենք զգում

վառի նախորդ սերունդների ազնիվ տքնությամբ ստեղծված արժեքները, որոնք նա օգտագործել է իր նոր խոսքն ասելիս, դժվարացրել, որովհետև շատ է ծանրացել այդ բոլորից հետո նոր խոսք ասելը, նախորդներին չկրկնելը: Դարոնյանի ստվարածավալ ուսումնասիրության մեջ զգացվում են երկուսն էլ՝ և՛ հեշտության, և՛ դժվարության գիտակցումը: Դա է եղել հիմքերի հիմքը՝ նախորդների արածը երախտագիտությամբ հիշել-օգտագործելը, և եղածի վրա իրենը, նորը ավելացնելը: Դժվարության գիտակցումն է եղել պատճառը, որ խնդրո առարկա գիրքը գրվել է շուրջ քառորդ դարի տքնությունից ու որոնումներից հետո: Սկսած 1950-ական թվականներից ռուս և հայ պարբերական մամուլում ու ժողովածուներում Դարոնյանը հանդես է եկել Նալբանդյանի կյանքի և ստեղծագործության տարբեր պրոբլեմների մասին ավելի քան չորս տասնյակ ուսումնասիրություններով: Գրել է նաև գրքեր— Микаэл Налбандян (Москва, 1963), Налбандян и русские революционные демократы (Москва, 1967, 2-ое изд. 1979), Микаэл Налбандян. Проблемы творчества и литературных связей (Ереван, 1975): Ասել է թե՝ գրքին նախորդած իր բազմաթիվ ու բազմաբնույթ ուսումնասիրություններով Դարոնյանը «շուրջկալել» է թեման, մոտեցել նրան ամենատարբեր կողմերից, լուծել թեմային առնչվող բազում պրոբլեմներ ու հարցեր: Ուրեմն Միքայել Նալբանդյան թեման Դարոնյանի համար չի եղել վաղանցուկ հրապուրանք՝ թելադրված հոբելյանական կամ այլ օրընթաց նկատառումներով: Ուսումնասիրողի պատասխանատվության բարձր զգացումը երևում է սկսած վերնագրի ընտրությունից: Հետաքրքրական է, որ իր նախորդ ծավալուն գիրքն իսկ նա չի վերնագրել սոսկ Միքայել Նալբանդյան. արել է կարևոր վերապահություն՝ «Ստեղծագործության և գրական կապերի պրոբլեմներ»: Այսինքն՝ որոշել է իր մեկնակետը: Եվ ճիշտ է արել, որովհետև Միքայել Նալբանդյան վերնագրումը (առանց մեկնակետի մասին վերապահության) և ուսումնասիրության ստվար ծավալը շատ են պարտավորեցնող:

Նալբանդյանագիտության մասին խոսելիս ասացինք, որ Դարոնյանն օգտագործել է նրա նվաճումները. այժմ ավելացնենք, որ այդ բանը նաև յուրօրինակ դժվարություններ է հարուցել: Մեր խոսքը վերաբերում է նալբանդյանագիտության նվաճումները քննադատորեն յուրացնելուն: «Նալբանդյանի շուրջ» և նրան «սեփականացնելու» համար պայքարը բավական երկար պատմություն ունի: Նրան իրենցն են համարել ամենատարբեր հոսանքների ներկայացուցիչներ— երբեմն չխուսափելով նաև իրենցը դարձնելու հետ կապված «հոգսերից»՝ սկսած կամայական մեկնաբանություններից մինչև փաստերի անտեսումը: Այս ասպարեզում ամենափութեռանդ ջանքեր են գործադրել լիբերալները՝ սկսած «ազգության հրապարակախոս» (և ոչ որևէ հոսանքի, ուղղության) հորջորջումից մինչև նրան կյանքի վերջին շրջանում իր հեղափոխական դավանանքից ու գործունեությունից հիասթափված և զղջացող՝ լիբերալների դիրքերն անցած ներկայացնելը:

Այս ամենը քննել-քննադատելը և մարքսիստական ելակետից վերագնահատելը գրախոսվող գրքի լուրջ արժանիքներից է:

Դարոնյանն իր ուսումնասիրության ընթացքում հաղթահարել է նաև այլ կարգի դժվարություններ. մենք նկատի ունենք Նալբանդյանի գրեթե սահմաններ ժխտող բազմակողմանիությունը և օգտագործած բազմաթիվ ժանրերը: Ինչպես ճշտորեն նշում է ուսումնասիրողը, Նալբանդյանը հետաքրքրվել է նաև բժշկագիտության, կենսաբանության, ֆիզիկայի, քիմիայի, կենդանաբանության, ագրոտեխնիկայի, աստղաբաշխության, երկրաբանության հարցերով: Ընդ որում՝ ոչ թե «դիլետանտական մասշտաբներով», այլ լուրջ գիտական նպատակներով: Գումարենք այդ ամենին Նալբանդյանի օգտագործած ժանրերը՝ հիշատակարան, օրագրություն, բանաստեղծություն, պոեմ, վեպ, վիպակ, ֆելիետոն, ակնարկ, պամֆլետ, քննադատական ու գրականագիտական ուսումնասիրություն, թատերախոսական, փիլիսոփայական ու հրապարակախոսական հոդված, լեզվաբանական ու հոգեբանական բնույթի աշխատություն, թարգմանություն, բանահյուսական նյութի մշակում և այլն, և այլն: Այս է պատճառը, որ նրա թողած ժառանգության ուսումնասիրությամբ զբաղվել և շարունակում են զբաղվել ամենատարբեր բնագավառների մասնագետներ: Ընդ որում՝ մեր նշած դժվարության թելադրանքով և «որոշակի-մասնակի» նպատակի պատճառով Նալբանդյանին նվիրված ուսումնասիրությունները երբեմն սահմանափակվում են «շրջանակներով»— Նալբանդյանի պոեզիան, Նալբանդյանի գեղարվեստական արձակը, Նալբանդյանը լեզվաբան, Նալբանդյանի փիլիսոփայական հայացքները և այլն: Կարծում ենք, այժմ ընթերցողի համար ևս (հեղինակը հասու է այս ամենին) ակնհայտ դարձան Միքայել Նալբանդյան մեծածավալ մենագրության պարտադրած բազմակողմանիության սահմաններն ու խորքը:

Կան նաև այլ դժվարություններ. ռուս-հայ հասարակական-քաղաքական և գրական առնչությունները թերևս ոչ մի հայ գրողի հետ այնպես շատ չեն, որքան Մ. Նալբանդյանի: Այս դժվարության հաղթահարմանը շատ է օգնել գրականագետի նաև ռուս գրականության մասնագետ լինելը, նրա լավատեղյակությունը ռուս գրականությանն ու մշակույթին: Հավելենք նաև մի այլ դժվարություն-բարդություն՝ Նալբանդյանի ժամանակի, մասնավորաբար՝ եզովպոսյան լեզվի առթած խոչընդոտները:



Մենագրության առավելություններից մեկը մենք համարում ենք Մ. Նալբանդյան մտածողի «ծագումնաբանությունը» հարցի քննությունը: Հակառակ Նալբանդյանին հայ իրականությունից կտրելու, ինչպես և միայն այդ իրականության հետ կապելու և ռուս հեղափոխական-դեմոկրատների (և առհասարակ ռուս ու եվրոպական հասարակական-գրական մտքի) հետ ունեցած առնչությունները անտեսելու երկու ծայրահեղությունների, Դարոնյանն իր ուսումնասիրության մեջ հանգամանորեն քննում է Նալբանդյան—հայ գրականություն հարազատության բոլոր հարցերը. «Նախիջևանյան ժամանակաշրջանը», «Մոսկովյան ժամանակաշրջանը», «Աշխատակցությունը «Հյուսիսափայլին»» գլուխները և մյուս գլուխների բազմաթիվ հատվածներ նվիրված են այդ պրոբլեմի քննությանը: Նալբանդյան—Աբովյան, Նալբանդյան—Նազարյանց, Նալբանդյան—Պատկանյան, Նալբանդյան—հայ պարբերական մամուլ (և՛ արևելահայ, և՛ արևմտահայ), Նալբանդյան—հայ հին ու նոր գրականության հարցերի համգամանալից ուսումնասիրությունները մեր ասածի լավագույն հաստատումն են: Ճիշտ դիրքերից է քննված նաև «օտար» ազդեցությունների ու առնչությունների պրոբլեմը:

Մեծատաղանդ ազգային բանաստեղծն ու գրականագետը լավ գիտեր, որ ազդեցությունը ոչ մի ընդհանուր բան չունի ուրիշներից մեխանիկորեն վերցնելու, «լոկ և միայն ստանալու» հետ. «...փոքր է լոկ և միայն ստանալը և սեպհականելը զանազան գիտությունք և տեղեկությունք, որ հայտնագործել էին ուրիշները,— գրել է նա:— Հարկավոր է, որ այդ ընտանալուց և սեպհականելուց նույնիսկ մարդու մեջ կատարվի մի հեղափոխություն-վերածնելություն. նորան անհրաժեշտ հարկավոր է սեպհական գործունեություն, ընդունող, գնահատող և իշխող այդ գիտությունների վերա. հարկավոր է մտքի արարչական, ստեղծագործական զորություն. հարկավոր է, որ այդ տեղեկությունքը դրվեին ոչ որպես սերմեր ավազի վերա, այլ շարժողություն պատճառեին հողի մեջ և պտուղ տային» (հ. 2, էջ 263—264): «Հեղափոխություն-վերածնելություն», «սեպհական գործունեություն», «մտքի արարչական, ստեղծագործական զորություն», «շարժողություն պատճառող» և «պտուղ տվող» հող: Ազդեցության այս տեսակը ո՛չ միայն չի խանգարում, այլև օգնում է ինքնուրույնության առավել վառ ու ինքնատիպ դրսևորմանը և հանդես է գալիս միայն մեծերի ստեղծագործություններում: Այս հարցը, մասնավորաբար ազգային ինքնատիպ մտածող ու գրող Նալբանդյանի՝ ռուս հեղափոխական դեմոկրատներից կրած ազդեցության խնդիրը, լավագույնս ձևակերպել է Ալ. Մյասնիկյանը. Նալբանդյանի «...հասարակական դեմքը պարզվել է ռուսական կյանքի և ռուս մտածողների շնորհիվ. իսկ հայ իրականությունը ուղղություն է տվել նրան, նախորոշել է նրա իդեոլոգիան: Նալբանդյանը ամենից առաջ և ամենից շատ հայ կյանքի ծնունդ է» (Ընտիր երկեր, 1957, էջ 35): Այս ճիշտ հիմնադրույթն է դարձել հայ-ռուս հասարակական-քաղաքական մտքի և գրական առնչությունների ուսումնասիրության ելակետը: Դարոնյանը ճիշտ է նշում նաև առնչությունների ընդհանուր հիմքը՝ նույն երկրում, նույն պետական համակարգի, նույն օրենքների մթնոլորտում ապրելը և ազատության նույն որոնումները: Խոսելով ռուս հեղափոխական դեմոկրատների և Նալբանդյանի «գեղագիտական կոդեքսի» նմանությունների մասին՝ Դարոնյանն իրավամբ գրում է. «Նալբանդյանի և ռուս հեղափոխական դեմոկրատների գրականագեղագիտական հայացքների ընդհանրությունը վերջին հաշվով ձևավորվել է նրանց սոցիալ-քաղաքական ծրագրի ընդհանրությունից» (էջ 234): Մեզ խորին բավականություն է պատճառում ռուս-հայ առնչությունների ծավալուն և մանրակրկիտ ուսումնասիրությունը գրախոսվող գրքում: Բազմաթիվ փայլուն էջեր կան նվիրված նաև հայ-եվրոպական գրական առնչություններին, մասնավորաբար «Շեքսպիր—Նալբանդյան» թեմային (էջ 253—268): Սակայն առնչությունների և ազդեցությունների կապակցությամբ ուզում ենք անել մի առարկություն. երբեմն (ճիշտ է, խիստ հազվադեպ) տարվելով Նալբանդյանի և ռուս հեղափոխական դեմոկրատների հայացքների ընդհանրություններով, Դարոնյանը հակամետ է ազդեցություն տեսնել նաև չեղած տեղերում: Նույն հարցի մասին շատերը միմյանցից անկախ նման մտքեր են հայտնել (օրինակ՝ օտար լեզուների բառերով մայրենի լեզուն խճողելու մասին) և դրանց համադրումը, դրանց մեջ առնչություններ ու ազդեցություններ որոնելը («հիշեցնում են», «ապշեցուցիչ նմանություններ» ձևակերպումներով) միտում են ինչ-որ չափով անտեսել ինքնատիպությունը: Միքայել Նալբանդյան հետազոտության համար, կրկնենք, բնորոշը այս կարգի մասնակի փաստերը չեն, այլ կապերի ու ազդեցությունների ըստ ամենայնի խոր ու փաստալից ուսումնասիրությունը: Ոչ մի առարկություն չի հարուցում «Հյուսիսափայլ» ամսագրի և՛ «տեղական» (Ստ. Աբովյանի լուսավորական գաղափարները, Մ. Թաղիադյանի «Ազգասեր» լրագրի դեմոկրա-

տական ավանդույթները), և՛ ոչ հայկական («Современник», «Колокол») առնչությունների քննությունը:

Միքայել Նալբանդյան ուսումնասիրության մեջ գիտական ճշգրտությամբ վերլուծված են նաև նալբանդյանագիտության մի քանի հին ու շատ վեճերի առիթ դարձած խնդիրներ: Դրանցից մեկը Նալբանդյան—Նազարյանց հարցն է: Ո՛չ նմանությունների ընդգծում, ոչ էլ տարբերությունների սրում՝ մինչև թշնամության աստիճան: Հայտնի է, որ Նալբանդյանը հեղափոխական դեմոկրատիզմի դիրքերն անցնելուց հետո, մասնավորաբար 1859 թվականի աշնանից, հեռացավ «Հյուսիսափայլ»-ից, նրա ու Նազարյանցի հայացքների միջև եղած տարբերությունները հասցրին խզման: Սակայն խմբագրությունից հեռանալուց հետո էլ Նալբանդյանը երբեք Նազարյանցին չի համարել օտար ու մանավանդ՝ հակառակորդ և ոչ էլ Նազարյանցն է հակառակորդ տեսել իր «անխոհեմ սիրելու» մեջ: 1860-ին Նալբանդյանը, ի հակադրություն իրենց հարաբերությունների չարախնդաց մեկնաբանների, գրել է. «Մեք միշտ «Հյուսիսափայլ»-ի հետ ենք եղել և կմընանք. «Հյուսիսափայլ»-ի դավանությունը է և մեր սրտի խոստովանությունը: Եվ եթե պատահի մեզ, ո՛վ գիտե, ճանապարհորդությամբ, կամ այլ զանազան մեզանից չկախված պատճառներով ավելի երկար լուռ մնալ, այնուամենայնիվ անբաժան ենք «Հյուսիսափայլ»-ից... բացակայության ժամանակ, ճանապարհորդության փոշիների միջից ևս կաշխատենք լսելի կացուցանել մեր ձայնը ընթերցող հասարակության... «Հյուսիսափայլի» ուղղությունը հայտնի է արդեն, նա մինչև վերջը հաստատ պիտի մնա յուր ուղղության մեջ, պարտական չհամարելով յուր անձը ուշադրություն դարձուցանելու անկյունախոս ճարտասանների իմաստակության վերա» (հ. 1, էջ 486—487):

Հետագա տարիներին ևս չսառեց հայ իրականության այդ մեծերի բացառիկ բարեկամության ջերմությունը և դիմացավ ամեն կարգի փորձությունների: 1864-ին գրած «Երկու խոսք, թե ինչպես է մեր հայացքը մի օրագրի պաշտոնակատարության մասին» հոդվածում, հերքելով «Հյուսիսափայլ»-ի հակառակորդների հիմնազուրկ մեղադրանքները, Նալբանդյանը բարձր է գնահատում ամսագրի և նրա «չնաշխարհիկ և իմաստուն» խմբագրի բացառիկ դերը ինչպես հայ հասարակական ու գրական մտքի զարգացման բնագավառում, այնպես էլ հայ նոր գրական լեզվի հաղթանակի ու զարգացման գործում: «Ազգը երբեք չի կարող ուրանա գերապատիվ Նազարյանցի աշխատությունը և անխարդախ դեպի ինքը սերը. նա ուղիղ և պարզ մտքով կտեսանե այս չնաշխարհիկ և իմաստուն հեղինակի քնքուշ սիրտը, թող և մեր սիրելի բարեկամ պարոնները ևս անհոգս մնան, որ նոցա փառասիրություն և հեղինակի անուն ժառանգելու հիմար ձգտողությունը ևս անծանոթ չի մնա ազգին գոնե այսուհետև» (հ. 2, էջ 411):

Հայտնի է նաև, որ Նազարյանցն այցելել է Ալեքսեևյան ռավելինի բանտախցի կալանավոր իր բարեկամին, «քաղցր տեսություն» ունեցել նրա հետ և խորապես ցավել, որ չի կարողացել իր «ազատությունից» նրան «բաժին» տալ (Նամականի, Երևան, 1969, էջ 266): Իրավացի է Դարոնյանը. «Չնայած տարիքի և խառնվածքի տարբերությանը, մի շարք սկզբունքային հարցերի շուրջ հայացքների տարբերությանը, նրանց միավորում էր ջերմ սերը դեպի ժողովուրդը, կրքոտ ձգտումը՝ դուրս բերելու նրան բազմադարյան խավարից ու տգիտությունից և կուլտուրական հետամնացությունից: Տարբեր ուղիներով նրանք ընթանում էին դեպի մեկ միասնական նպատակ... Ինչ-որ տեղ նրանց ուղիները համընկնում էին, իսկ ինչ-որ տեղ էլ կտրուկ կերպով բաժանվում, բայց նրանք երբեք չէին դավանանում գլխավոր մի բանի՝ բազմաչարչար Հայաստանի վերածնության սատարմանը» (էջ 302—303: Ընդգծումը հեղինակինն է.— Վ. Պ.): Նալբանդյան—Նազարյանց հարաբերության պրոբլեմի ճիշտ լուծումը հիմք է հանդիսացել մի այլ բավական խճճված հարցի պարզաբանման: Խոսքը «Հյուսիսափայլ»-ի խմբագրության պառակտումը «Современник»-ի պառակտման հետ նույնացնելու միտումին է վերաբերում: Ինչպես ճիշտ նկատում է Դարոնյանը, «Современник»-ի պառակտումը և Նալբանդյանի «Հյուսիսափայլ»-ից հեռանալը չի կարելի նույնատիպ երևույթ համարել: «Современник»-ից հեռացած լիբերալ գրողներն ու քննադատները փոխեցին դիրքերը և սկսեցին աշխատակցել «Современник»-ի հակառակորդ օրգաններում, մինչդեռ Նալբանդյան—Նազարյանց բարեկամությունը շարունակվեց նաև հետագա տարիներին: Նալբանդյանը չթշնամացավ «Հյուսիսափայլ»-ին, որովհետև վերջինս շարունակում էր մնալ հայերեն հրատարակվող միակ առաջադեմ պարբերականը Ռուսաստանում: Այս ամենից հետո, ինչ խոսք, որ ոչ մի հիմք չկա Նազարյանցի և «Русский вестник»-ի խմբագիր Մ. Կատկովի հայացքների նույնացմանը (ինչ փորձում էին անել): Նազարյանցը մի շարք հարցերում նույնիսկ խստորեն տարաձայնելով Նալբանդյանից, մընում էր հայ իրականության մեջ ամենալուսավոր ու ամենահայրենասեր դեմքերից մեկը և խստորեն քննադատում էր Կատկովի «անհոռնի կարծիքները և հայացքը» (Նամականի, էջ 274—275):

Նազարյանցի և «Հյուսիսափայլ»-ի այսպիսի



գնահատականը տրամաբանորեն հանգեցրել է Նալբանդյանին միայնակ, առանց համախոհների ու համակիրների, պատկերացնելու տեսակետի քննադատության:

Հայտնի է, թե ինչպես մի ժամանակ «60-ական թվականների դարաշրջանը» հայ իրականության մեջ գրեթե նույնացվում էր հեղափոխական դեմոկրատիզմի հետ: Սահմանների այդպիսի նեղացումը, որ մասամբ արտահայտվեց նաև ամենավաստակավոր նալբանդյանագետ Աշ. Հովհաննիսյանի աշխատություններում, ըստ էության, հակասում էր 60-ական թվականների դարաշրջանի գիտական գնահատականին: «Բոլոր լուսավորիչների համար ընդհանուր հայացքների» տեսակետից գնահատելով 60-ական թվականների գործիչներին, Լենինը նրանց ներկայացուցիչներից է համարում նաև Սկալդինին և ուրիշների: Այսպիսի մոտեցման դեպքում, ինչ խոսք, կհերքվեն Նալբանդյանին իբրև «միայնակ ժայռ» ներկայացնելու տեսակետները:

Դարոնյանի ուսումնասիրության մեջ ճիշտ է պարզաբանված նաև Պատկանյան—Նալբանդյան հարաբերությունների խնդիրը, որը նույնպես երկար վեճեր առթած (ընդհուպ մինչև «մի թշնամության մասին» ձևակերպումը) և մինչև մեր օրերը հասած պրոբլեմ է դարձել:

Միքայել Նալբանդյան գրքի ամենամեծ արժանիքը նրա, արդեն ակնարկել ենք, ամբողջականությունն է— Նալբանդյանի կյանքի և ստեղծագործության գրեթե ոչ մի քիչ թե շատ հետաքրքրական հարց անտեսված չէ այստեղ: Հանգամանորեն վերլուծված են մեծ մտածողի պոեզիան, գեղարվեստական արձակը, հրապարակախոսությունը, գրականագիտական-քննադատական ու լեզվաբանական վաստակը, փիլիսոփայության ու բնագիտության մասին հոդվածները, հարուստ նամականին: Մարքսիստական մեթոդոլոգիական մոտեցումը կանխորոշել է Դարոնյանի եզրակացությունների ճշտությունը: Լուսավորական դեմոկրատիզմից հեղափոխական դեմոկրատիզմի դիրքերն անցնելը, հայ ժողովրդի ճակատագրի հարցում Ռուսաստանի որոշիչ դերի խնդիրը, Արևմուտքի ռեակցիայի նկատմամբ քննադատական դիրքը և առհասարակ մեծ մտածողի աշխարհայացքը քննված են հանգամանորեն և հաճախ «նոր ընթերցմամբ»: Ընդ որում՝ «ընտրած հեղինակին» սրբագրված-խմբագրված ներկայացնելու միտումը, որ սովորաբար սահմանակցվում է պատմությունը խմբագրելուն և հակապատմական եզրահանգումներին, խորթ է Դարոնյանին: Նա մանրամասն խոսում է Նալբանդյանի հայացքների նաև պատմական սահմանափակությունների ու սխալների մասին, այդ ամենը քննելով աստիճանական զարգացման մեջ՝ դրանով իսկ ուրվագծելով Նալբանդյանի աշխարհայացքի ու գրական հայացքների ձևավորման ուղեգիծը: Դրա լավագույն ապացույցը նաև «Հաղագս հայկական մատենագրության ճառ»-ի հմուտ վերլուծությունն է: Այդ հատվածում ցույց են տրված Սայաթ-Նովայի և ապա XIX դարի կեսերի հայ գրականության (Ալամդարյան, Թաղիադյան, Ալիշան և ուրիշներ) մասին Նալբանդյանի հայտնած կարծիքների սխալները: Մասնավորաբար լավ են վերլուծված Նալբանդյանի հրապարակախոսության առանձնահատկությունները և Մինին՝ խոսք, մյուսին՝ հարսն վիպակը՝ սկսած տպագրության, կորստի ու գտնվելու հանգամանքներից մինչև այն իբրև հայ լուսավորական ռեալիզմի արտահայտություն քննելը: Մենագրության այս հատվածներում ամենից շատ է դրսևորվել Դարոնյանի բերած նորը նալբանդյանագիտության մեջ: Մենք լիովին համաձայն ենք այդ և Մեռելահարցուկ վեպի կապակցությամբ Նալբանդյանի գրական մեթոդին Դարոնյանի տըված բնութագրությանը. «Ամբողջությամբ վերցրած,— գրում է նա,— «Մեռելահարցուկ»-ին հատուկ է լուսավորական ռեալիզմի պոետիկան: Սակայն նրանում զգացվում են նաև սոցիալական վեպի հատկանիշները, որտեղ առաջին պլան են մղվում հասարակական հարաբերությունները և կերպարները: «Մեռելահարցուկ»-ում, ինչպես նաև «Հիշատակարան»-ի մի շարք գլուխներում, զգացվում է քննադատական ռեալիզմի շունչը» (էջ 212):

Գրախոսվող գրքում բացահայտ երևում են նալբանդյանագիտության վերջին և ամենանշանակալից ուսումնասիրության (Ա. Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը) հրատարակությունից հետո անցած շուրջ քառորդ դարի նվաճումները՝ զգալի չափով կապված հենց իր՝ Դարոնյանի անվան հետ: Իտալացի աղջկա երգ-ի նոր ընթերցման, Օգարյովի՝ «Ի՞նչ է հարկավոր ժողովրդին» թռուցիկը գրելուն Նալբանդյանի մասնակցության հարցի, «Земля и воля» ընկերություն—Նալբանդյան պրոբլեմի պարզաբանման, Պախալյան ծածկանվան վերծանման, Անթար, Աստղագետ երկերի մեկնաբանության և շատ այլ խնդիրների ճիշտ լուծման պատիվը ևս պատկանում է Ս. Դարոնյանին:

Իհարկե, դիտողություններ ևս կարելի է անել, մանավանդ այսպիսի ստվարածավալ ու բազմաթիվ պրոբլեմներով հարուստ ուսումնասիրության մասին: Սակայն կատարվածն այնքան շատ է, որ մենք մեր առարկություններից մի երկուսն ենք միայն ուզում նշել: Կրիտիկա «Սոս և Վարդիթերի» քննադատական-գրականագիտական աննախընթաց և մինչմարքսիստական հայ գրականագիտության

հանդես գալը չերկրորդված ուսումնասիրությունը, որ վերլուծված է հանգամանորեն, իր խաղացած պատմական դերով համեմատվում է Չերնիշևսկու Գոգոլյան ժամանակաշրջանի ռուս գրականության ուրվագծեր-ի հետ (էջ 458): Մեծարժեք այդ երկերը կարելի է համեմատել ամենատարբեր ասպեկտներով (խորությամբ, հեղափոխական պաթոսով, ռեալիզմի տեսության հարցերի արծարծմամբ և այլն), սակայն ոչ խաղացած պատմական դերով, որովհետև Կրիտիկա-ն հրատարակվել է գրվելուց ավելի քան 70 տարի անց՝ 1935-ին (1890-ին տպագրվել էր ընդամենը մի հատված) և, ինքնին հասկանալի է, չէր կարող կատարել այն մեծ դերը, ինչ ի վիճակի էր կատարելու, եթե հրատարակվեր ժամանակին:

Մի դիտողություն ևս. հեղինակը, ցավոք, աշխատությունը չի օժտել աղբյուրագիտությամբ, որը շատ կօգներ ցույց տալու ինչպես նախորդ, նույնպես և սովետական Նալբանդյանագիտության անցած ուղին և ավելի որոշակի կդարձներ այն նորը, որ բերում է ինքը՝ Դարոնյանը (տեքստում արված վկայակոչումները լրիվ չեն կարող փոխարինել այդ պրոբլեմի առանձին ու հանգամանալից քննությանը):

Մեր վերջին դիտողությունը վերաբերում է «Վերջաբանի փոխարեն» խիստ համառոտ հատվածին, որը նվիրված է երկու հարցի՝ Նալբանդյանի դերի, նրա ժառանգության տարբեր գնահատումներին և նրա «անմահ կերպարը» «գրականության և արվեստի սովետահայ գործիչների մի շարք ստեղծագործություններում» մարմնավորելուն: Երկրորդ խնդրին հատկացված է ընդամենը երկու էջ, մինչդեռ դա շատ ծավալուն ու հանգամանալից ուսումնասիրության արժանի մի պրոբլեմ է (և ինչո՞ւ միայն սովետական շրջանի գրականության ու արվեստի երկերում), որ չի մտնում Դարոնյանի նպատակադրման մեջ և սպասում է իր ձեռնհաս ու բոլորանվեր ուսումնասիրողին:

Ամփոփենք. մեր այս մի քանի դիտողությունները, որ վերաբերում են մասնակի խնդիրների, բնավ չեն կարող ազդել Միքայել Նալբանդյան գրքին տված մեր բարձր գնահատականին: Գրված է ըստ ամենայնի հանգամանալից մի ուսումնասիրություն, որը նշանավորում է նալբանդյանագիտության վերջին քառորդ դարի նոր ու ծանրակշիռ խոսքը:

**Վ. Զ. ՊԱՐՏԻԶՈՒՆԻ**

# ՕԳՏԱԿԱՐ ՄԵՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Է. Հարությունյանի *Տրամաբանության փիլիսոփայություն* մենագրությունը պատշաճ ընդունելություն գտավ ընթերցողների շրջաններում: Դա բացատրվում է նրանով, որ փիլիսոփայական-տրամաբանական պրոբլեմատիկան առաջնակարգ է ժամանակակից տեսական հետազոտություններում: Դա պայմանավորված է մի շարք գործոններով, որոնցից թերևս առաջինն այն է, որ արդի գիտական իմացությունն այլևս չի բավարարվում արիստոտելյան դասական տրամաբանությամբ: Այսպես, ժամանակակից ֆիզիկայի հիմքում ընկած է բազմարժեք տրամաբանական համակարգ: Հայտնի է, որ գիտական վարկածը բազմարժեք է իրականության այն հատվածի նկատմամբ, որը հավակնում է այն նկարագրել: Վարկածի կամ առույթի բազմարժեքությունը պայմանավորված է դրանց և մեր ունեցած մյուս գիտելիքների փոխհարաբերությամբ: Ստեղծված եռարժեք, բազմարժեք և հավանական տրամաբանական համակարգերի և արիստոտելյան տրադիցիոն տրամաբանության փոխհարաբերության հարցը մի կողմից և արիստոտելյան ու մարդկային ռեալ կշռադատության փոխհարաբերության հարցը մյուս կողմից սերտորեն աղերսվում են աշխարհի գիտական պատկերի ճշմարտության հետ և ձեռք են բերում փիլիսոփայական ու աշխարհայացքային հնչեղություն:

Հարկ է նկատել նաև, որ արդի փիլիսոփայության և գիտության համար տրամաբանությունը հանդես է գալիս իբրև բացահայտման, ճշգրտման միջոց, որով փիլիսոփայական «հավերժ» պրոբլեմներն ավելի հստակ, ճշգրիտ ձևակերպում են ստանում և դրանով իսկ ուրվագծվում են նրանց լուծման հնարավոր ուղիները: Այսպես, անալիտիկ և սինթետիկ գիտելիքների, տեսական մտակառույցների պրոբլեմների լուծումներն այժմ անհնար է պատկերացնել առանց տրամաբանական համակարգերի կիրառման:

Ինչպե՞ս է գրքում հիմնավորվում տրամաբանության (խոսքը վերաբերում է բացառապես ձևական տրամաբանությանը) փիլիսոփայության՝ որպես հետազոտության ինքնուրույն բնագավառի կամ ասպեկտի քաղաքացիության իրավունքը: Հեղինակը դեմ է ձևական տրամաբանության այնպիսի մեկնաբանմանը, որով դրա իրավասությանն են վերապահվում իմացաբանությանը պատկանող պրոբլեմները (մտածողության ձևերի և բովանդակության փոփոխում և զարգացում, մտածողություն, տրամաբանական ձևերի օբյեկտիվություն և այլն) և պնդում է, որ այսպիսի մոտեցումը «նեղացնում է փիլիսոփայական իմացության շրջանակները»: Նա իրավամբ պնդում է, որ «վերանալով գիտելիքի բովանդակությունից և գերազանցապես զբաղվելով փաստարկման կառուցվածքի հետ առնչվող հարցերով, ձևական տրամաբանությունը, բնականաբար, նման կարգի պրոբլեմներ չի կարող լուծել, չնայած դրանք ծագում են հենց տրամաբանական հետազոտության ընթացքում» (էջ 4):

Վճռականորեն մերժելով պոզիտիվիստական այն պնդումը, թե տրամաբանությունը փիլիսոփայության հետ ոչ մի առնչություն չունի և նշելով տրամաբանական պրոբլեմների այն խումբը, որոնք վերանում են փիլիսոփայականի, հեղինակը, այնուամենայնիվ, գտնում է, որ, ունենալով համընդհանուր ու անհրաժեշտությամբ օժտված օրենքներ, տրամաբանությունը հարաբերականորեն անկախ է փիլիսոփայությունից մտածողության ուսումնասիրման իր ասպեկտով և հետազոտության իր մեթոդով: Ուստի, նա եզրակացնում է. «տրամաբանության փիլիսոփայության», որպես հետազոտության ինքնուրույն բնագավառի, ասպեկտի առանձնացումը նույնքան օրինական է, որքան «մաթեմատիկայի փիլիսոփայության», «ֆիզիկայի փիլիսոփայության», «կենսաբանության փիլիսոփայության» առանձնացումը:

Նման մոտեցումը «հնարավորություն է ընձեռում բացահայտելու այնպիսի գաղափարներ, որոնց վրա անհրաժեշտ ուշադրություն չի դարձվել» (էջ 10—11): Փիլիսոփայության պատմությանը նվիրված աշխատություններում,

* *Է. Հարությունյան,* Տրամաբանության փիլիսոփայություն: *Ուրվագծեր: Դասական շրջանի քննական վերլուծություն: «Հայաստան» հրատ., 1979:*

պետք է զանազանել հարցի երկու կողմը, դեդուկտիվ մտահանգումը, իհարկե, ներքին անհրաժեշտ, տրամաբանական կապի տեսակետից գերադասելի է ինդուկտիվ մտահանգումից, որքանով որ տալիս է հավաստի, անհրաժեշտ գիտելիք: Իսկ ինչ վերաբերում է ինդուկցիային և դեդուկցիային, որպես իմացության մեթոդների, ապա հեղինակը պնդում է, որ Անհաղթը բոլորովին էլ չի թերագնահատում ինդուկցիայի դերը:

Այնուհետև ցույց է տրվում այն պայքարը, որ Անհաղթը մղել է սկեպտիցիզմի դեմ: Սահմանք իմաստասիրութեան և Անալիտիկաների մեկնության մեջ նա հանգամանորեն բերել է սկեպտիցիզմի համարյա բոլոր փաստարկները ընդդեմ սիլլոգիզմի և ամենայն մանրամասնությամբ քննարկել դրանք: Մենագրությունում նշված են Անհաղթի փաստարկների իմացաբանական և տրամաբանական կողմերը: Ըստ սկեպտիցիզմի, բնության և իրերի իսկական էությունը թաքնված է մարդկանցից և անճանաչելի է: Անհաղթը ելնում է արմատապես հակառակ դրույթից: Ըստ նրա բնությունն ամեն ինչ չէ, որ թաքցրել է մարդուց. անհայտի և թաքնվածի կողքին կան ակնհայտը և հավաստին, որոնց միջոցով ճանաչվում են անհայտը և չճանաչվածը: Ճիշտ է այն դիտողությունը, որ հայ տրամաբանական միտքը՝ հանձին Դավիթ Անհաղթի, ո՛չ միայն ետ չէր մնում, այլ ընթանում էր եվրոպական գիտությանը համընթաց: Այսպես, Անհաղթի դրույթները տրամաբանության առարկայի, իմացաբանականի և տրամաբանականի, դեդուկցիայի և էմպիրիկ իմացության միասնության մասին, դեդուկցիայի որպես և՛ ապացուցման, և՛ հայտնագործման տրամաբանության ըմբռնումը, որոնց վրա կենտրոնացել է հեղինակը, հրատապ են և այսօր:

Պրոբլեմի պատմական լինելության հետազոտումը ինքնանպատակ չէ, այն օգնում է ըմբռնելու գիտության արդի խնդիրները: Փիլիսոփայության պատմությունը և տրամաբանության պատմությունը «չեզոք հող» չեն: Ժամանակակից ագնոստիցիզմը և իդեալիզմը իրենց դրույթների հիմնավորման համար մշտապես դիմում են տրամաբանությանը, նրա ճշգրտությունը և հավաստիությունը բացատրում է նրանով, որ այն ոչ մի բան չի ասում իրականության մասին: Իդեալիզմը նաև իր «լեզվով է թարգմանում» անցյալի ողջ տրամաբանական ժառանգությունը, կամ ամեն կերպ աշխատում է մոռացության մատնել այն մտածողներին, որոնք ոչ մի կերպ չեն տեղավորվում իդեալիստական փիլիսոփայության շրջանակներում:

Փիլիսոփայության և տրամաբանության պատմությունը մատերիալիստորեն մեկնաբանելը մարքս-լենինյան գիտության հրամայական պահանջն է, որին լիովին բավարարում է գրախոսվող մենագրությունը:

Լ. Բ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 08246 Պատվեր 1274 Թղթի չափը 70×108 1/16: Տիրաժ՝ 16.432 Գինը՝ 20 կոպ.: Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 4/VI-80 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Զեկուցում 1905 թվականի հեղափոխության մասին: «Հայաստան» հրատ., 1980:

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Վերջին նամակները և հոդվածները *(23 դեկտեմբերի 1922 թ., 2 մարտի 1923 թ.): «Հայաստան» հրատ., 1980:*

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ— Վ. Ի. Լենինը և հայ գործիչները: *Հանդիպումներ, նամակագրություն: Ե., ԳԱ հրատ., 1980:*

Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ— Բուրժուական դիվանագիտությունը և Հայաստանը *(XIX դարի 80-ական թթ.): «Հայաստան» հրատ., 1980:*

Հ. ԻՍԱՀԱԿՅԱՆ— Անդրկովկասը ռուս հեղափոխական մտքի գնահատմամբ. *1895—1917 թթ.: «Հայաստան» հրատ., 1980:*

ԴԱՎԻԹ ԱՆՅԱՂԹ— Սահմանք իմաստասիրութեան: *Նմանահանություն 1280 թ. ձեռագրի: Ե., ԳԱ հրատ., 1980:*

Ս. ԱՐԵՎՇԱՏՅԱՆ— Դավիթ Անհաղթը Հին Հայաստանի ականավոր փիլիսոփա: *«Հայաստան» հրատ., 1980:*

Գ. ԲՐՈՒՏՅԱՆ— Դավիթ Անհաղթի ուսմունքը տրամաբանության մասին: *Ե., ԳԱ հրատ., 1980:*

Վ. ՄՈՒՍԱԽԱՆՅԱՆ— Համաժողովրդական պետությունը և նրա սահմանադրական վավերացումը: *ԵՊՀ հրատ., 1980:*

Է. Ի. ԹՈՓՉՅԱՆ— Ժողովրդայնություն և ռեալիզմ: *Հոդվածների ժողովածու երկու հատորով: Հ. 2, Ե., «Սովետական գրող», 1980:*

Լ. ՄԻՅԶԻՇ— «Ցիցերոն» օպերացիան: Է. ԲԱԶՆԱ— Ես էի Ցիցերոնը: *«Հայաստան» հրատ., 1980:*

Ս. ԽԱՆԶԱԴՅԱՆ— Հայրենապատում: *(1929—1970): Գիրք Ա: «Հայաստան» հրատ., 1980:*

Ն. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ, Լ. ԱԴԱՄՅԱՆ— Հողի գնահատման տնտեսական պրոբլեմները Հայկական ՍՍՀ-ում: *Ե., ԳԱ հրատ., 1980:*

**В. И. Ленин, КПСС о борьбе за мир.** Сборник. М., Политиздат, 1980.

**М. ТРУШ — Международная деятельность В. И. Ленина.** Год Великого Октября. М., Политиздат, 1980.

**И. ВЕРХОВЦЕВ — Живые черты великого образа.** В. И. Ленин в воспоминаниях современников. М., «Знание», 1980.

**Е. ТЯЖЕЛЬНИКОВ — Союз молодых ленинцев.** Изд. 2-е, доп. М., Политиздат, 1980.

**П. ФАТЕЕВ—Емельян Михайлович Ярославский.** М., «Мысль», 1980.

**Я. КАДАР — Избранные статьи и речи.** Февраль 1976 г.— июнь 1979 г. М., Политиздат, 1980.

**Н. МИРОНОВ — Международные договоры СССР.** М., «Знание», 1980.

**Н. ЯКОВЛЕВ — ЦРУ против СССР.** М., «Мол. гвардия», 1980.

**Страны Индокитая в борьбе за независимость и социальный прогресс.** Сборник статей. М., «Наука», 1980.

**Сионизм—правда и вымыслы.** Сборник статей. М., «Прогресс», 1980.

**Метод политической экономии социализма.** Коллективная монография. М., «Наука», 1980.

**Экономические и социальные проблемы научно-технического прогресса.** М., «Правда», 1980.

Գինը՝ 20 կ.
Индекс 77783

ISSN 0130—8114

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԷԼԵԿՏՐՈՆԻԿԱՅԻ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ

Այդ սարքն օգտագործվում է այն մարդկանց խոսքի վերականգնման համար, ովքեր հիվանդության հետևանքով զրկվել են խոսելու ունակությունից: Հիվանդի պարանոցին ամրացված սարքը մեմբրանի մեխանիկական տատանումները փոխարկում է էլեկտրական իմպուլսների, որոնք այնուհետև հատուկ սարքերի օգնությամբ փոխարկվում են պարզ խոսքի: Էլեկտրոնային խոսակն ունի փոքր, 240 գրամանոց ցիլինդրի տեսք: Դրա ցածի մասում գտնվում են կառավարման բլոկը և ակումուլյատորը, որը նախատեսված է 4 ժամ անընդմեջ օգտագործելու համար: Նոր սարքը պարզ է, կարգավորումը՝ նույնպես. բուժվող հիվանդը հինգ րոպեում կարող է հեշտությամբ սովորել այն վարել:

Լենհաստանի կլինիկայում կատարված փորձարկումները ցույց տվեցին դրա հուսալիությունն ու բարձր արդյունավետությունը:

## ՄԵՏՐՈՊՈԼԻՏԵՆ ԱՂԲԻ ՀԱՄԱՐ

«Կավասակի» ճապոնական ֆիրման մշակել է քաղաքային աղբի փոխադրման սիստեմ՝ ոչ խոր տեղադրված ստորգետնյա թունելով: Դրա համար նախատեսվել են վագոնիկներ, որոնց մեջ թաղամասերի հավաքման կետերով անցնող ուղղահայաց հիմնանցքերից հավաքվում են թափոնները: Ապա դրանք փոխադրվում են աղբի մշակման գործարանները: Վագոնիկները շարժվում են շղթայական հաղորդակով, որի ուժային մեխանիզմները տեղակայված են իրարից որոշակի հեռավորություններով: Դրանով իսկ վերանում է բեռնատար-աղբատարների անհրաժեշտությունը: Թափոնների հեռացումն ինքնին դառնում է առավել օպերատիվ և հիգիենիկ:

## ՃՆՇԱՉԱՓ ԹԵՎԻ ՏԱԿ

Բազմաթիվ կլինիկաներում արդեն 15 տարի է լայնորեն գործածվում են արյան ճնշման ավտոմատ գրանցիչները: Դրանք գործում են լավ, բայց ունեն մի թերություն՝ ծավալով փոքր-ինչ մեծ են: Ինքնատիպ ճնշաչափ են ստեղծել ամերիկյան «Կարդիոդին» ֆիրմայի ինժեներները: Այն ազատ տեղավորվում է վերարկուի գրպանում և, ի տարբերություն նախորդների, ո՛չ միայն չափում է ճնշումը, այլև տվյալները գրանցում մագնիսական ժապավենի վրա: Իսկ դա շատ կարևոր է. չէ որ բժիշկն այդպիսով կարող է մշտապես վերահսկել հիվանդին ինչպես հուզական գրգիռների ժամանակ, այնպես էլ դեղանյութն ընդունելուց առաջ և հետո: Մագնիսական ժապավենից ինֆորմացիան հաղորդվում է ինքնագրին, որը թղթե ժապավենի վրա գծում է կորեր: Ճնշաչափին ամրացվում է թևի տակ, իսկ զգայուն միկրոֆոնը գրանցում է ճնշման փոփոխությունները: Գրանցման սկիզբը կատարում է ինքը՝ հիվանդը, սեղմելով հարմարանքով օդ մղելով թևակապի մեջ: Օդ մղելու ժամանակը որոշվում է ավտոմատորեն, և ձայնային ազդանշանը «հայտնում է», որ սարքը պատրաստ է: Սարքը կարող է գործել այդպես 4 ժամից մինչև մի քանի օր, ընդ որում, հիվանդը կարող է այդ ընթացքում զբաղվել իր գործով:

## ԳՐԵԹԵ ԱՆԱՂՄՈՒԿ ԱՎՏՈԲՈՒՍ

ԳՖՀ «Դայմլեր-Բենց» ֆիրմայի գործարանը թողարկել է 0307 սերիայի ավտոբուս, որի շարժիչի աղմուկը սովորականի հետ համեմատած 50 տոկոսով նվազեցված է: Այդ արվել է մի շարք նորամուծությունների շնորհիվ: Մասնավորապես մեծացված է սառեցման սիստեմի օդափոխիչը, շրջապտույտների թիվն այժմ պակասել է: Շարժիչը ծածկող կափարիչը ներսից երեսպատված է պենոպլաստմասսայով: Նման պաշտպանական ծածկ է նախատեսված և շարժիչի տակ: Արտանետիչ խողովակն ունի լրացուցիչ խլացուցիչ կամերա, ուր գազերին հաղորդվում է մրրկային արագություն: